# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## № 11 • 1984

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկը՝ ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՆԻՇԸ

«Հաճախ, երբ խոսում են իմ արվեստի մասին,— ասել է Մարտիրոս Սարյանը,— բոլորովին մոռանում են մեր գերբը: Բայց ճշմարտությունն այն է, որ իմ ամենամեծ ստեղծագործությունը ես մեր հանրապետության գերբն եմ համարում»:

Այդ աշխատանքը նա կատարել է 1921 թ. Հայաստանի կառավարության հանձնարարությամբ:

Գերբի գծագրի գրաֆիկական աշխատանքները արել է Հակոբ Կոջոյանը: 1922 թ. փետրվարի 2-ին ՀՍՍՀ Սովետների 2-րդ համագումարում հաստատվում է այն:

Գերբը սկզբում սպիտակ, կլոր, արևելյան վահանի տեսք ուներ, վրան պատկերված էին Մասիսները, արև, աստղ, մուրճ ու մանգաղ, ձիթենու տերև և Հայաստանի տնտեսությանը բնորոշ խաղողի ողկույզ ու ցորենի հասկ: Եզրին գրված էր հայերեն «Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն», ներքևում՝ հայերեն և ռուսերեն՝ «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք»:

Տարիներ անց Մարտիրոս Սարյանը որոշ փոփոխություններ կատարեց գերբում. հանեց ձիթենու տերևները, իսկ արևը, աստղը և մուրճն ու մանգաղը միացրեց իրար: Եթե այժմ նայեք, արևի նշանը չեք տեսնի, բայց հնգաթև աստղից և մուրճ ու մանգաղից ճառագող արևի շողերը հավաստում են նրա գոյությունը: Գերբի մյուս տարրերը մնացին անփոփոխ և 1937 թ. մարտի 23-ին Սովետների 9-րդ արտակարգ համագումարը հաստատեց այս տարբերակը, որը մինչև այսօր անփոփոխ է:

Սովետական Հայաստանի գերբը շա-








տերի կողմից է դրվատանքի արժանացել: «Յունի խուդոժնիկ» հանդեսի 1983 թ. համարներից մեկում պատմական գիտությունների թեկնածու Վ. Պոխլեբկինը այսպիսի խոսքեր է գրել մեր գերբի մասին. «Այսպիսի մեծահմուտ կոմպոզիցիոն լուծում կարող էր, իհարկե, իրագործել միայն մեծ վարպետը, այն կառուցված է և՛ ճշգրիտ հաշվարկով, և՛ կատարյալ ճաշակով»:





# ՊԱՏԱՆԻ ՏԵԽՆԻԿՆԵՐԻ ԿԱՅԱՆՈՒՄ

Գիշերային երկնքում առկայծում են աստղերը: Ներքևում իր առանցքի շուրջը պտտվում է երկիրը: Հանկարծ լսվում է ազդանշանը և երկրից դեպի տիեզերական տարածություն է թռչում տիեզերանավը: Այն անցնում է Սատուրն մոլորակի մոտով, շրջանցում Մեծ Արջի համաստեղությունը, հետո շարունակում թռիչքը: Չհասած Լուսնին, տիեզերանավից անջատվում է հրթիռը: Տիեզերանավը նորից շրջանցում է Լուսինը և վերադառնում երկիր: Այստեղ նրան նորից միանում է հրթիռը:

Եվ այդ ամենը էլեկտրական կոճակի մեկ սեղմումով: Ինքնաշեն այդ սարքը, որ կոլեկտիվ աշխատանքի արդյունք է, գտնվում է Շահումյանի շրջանի պատանի տեխնիկների կայանում:

Այստեղ գործող հրթիռամոդելային, ավիամոդելային, նավամոդելային, հմուտ ձեռքերի, լուսանկարչական խմբակներում ընդգրկված երեխաները ձեռք են բերում տեխնիկական գիտելիքներ:

Ռադիոյով ղեկավարվող նավերի, ավտոմեքենաների, ազատ թռչող ու կորդային մոդելները մեկ անգամ չէ, որ հիացրել են շատերին: Կայանի սաներ Խաչիկ Թառոյանի, Գրիգոր Եփրեմյանի, Գևորգ Խաչատրյանի ստացած պարգևները դրա վկայությունն են: Հանրապետական մրցումներում պարբերաբար մրցանակային տեղեր են գրավում պատանի ավիամոդելիստները, որոնց ղեկավարն է կայանի սան Արծրուն Աշոտյանը:

Կայանը, որ դարձել է երեխաների սիրած վայրերից մեկը, բաց է ամեն օր: Ու եթե փորձեք այցելել այնտեղ, ապա հետաքրքիր շատ բաներ կտեսնեք, որոնց մասին հնարավորություն չունեցանք պատմելու:



Լուսանկարը՝ ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐԻ



# ԿԱԹՆԱԲՈՒՅՐ ՁԵՌՔԵՐ

Սպիտակ արտահագուստով կինը այնքան արագ էր աշխատում, որ երեխաները չէին հասցնում հետևել նրա ձեռքերի վարժ շարժումներին։

Դույլի մեջ խշշում էր սպիտակափրփուր կաթը ու թեթև գոլորշի էր բարձրանում։

Պիոներներն այդ օրը տեսան նաև ավտոմատ ջրիմոցների օգտագործումը, օգնեցին անասնապահներին՝ կովերին երեկոյան կեր տալու ժամանակ։

Դա նրանց առաջին այցելությունն էր ֆերմա։ Էքսկուրսիայի էին գնացել իրենց ուսուցչուհի Սոֆի Միքայելյանի հետ։ Հենց այդ էքսկուրսիան էր պատճառը, որ նրանց մեջ հետաքրքրություն առաջացավ ֆերմայի աշխատանքի նկատմամբ։

Մի օր էլ Ստեփանավանի շրջանի Գյառգյառի միջնակարգ դպրոցի մի խումբ պիոներներ նորից ֆերմա գնացին։

— Այս անգամ եկել ենք ոչ թե էքսկուրսիայի, այլ աշխատելու,— ասաց Ս. Միքայելյանը և ցույց տալով պիոներներին, ավելացրեց.— Սրանք մեր պատանի անասնապահների խմբակի անդամներն են։

Այդպես սկսվեց նրանց կապը ֆերմայի հետ։ Ուսումնական տարվա ընթացքում և թե արձակուրդի օրերին Կարինեն, Սամվելը, Փաշան, Արմինեն և էլի շատերը ֆերմա են գնում, խնամում կովերին, օգնում կթի աշխատանքներին։

Պիոներները հիմա ավելի մոտիկից գիտեն Արևհատ Մուրադյանին, որին երկու անգամ ծաղկեփնջեր են նվիրել ու շնորհավորել Աշխատանքային փառքի 2-րդ, հետո էլ՝ 1-ին աստիճանի շքանշաններով պարգևատրվելու համար։

Հիմա նրանց ձեռքերն էլ են կաթնաբույր, անվանի կթվորուհու ձեռքերի նման։ Այդ փոքրիկ, կաթնաբույր ձեռքերը բարիք են ստեղծում։

ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԶԱՆԳՎԱԾԱՅԻՆ ԾԱՌԱՏՈՒՆԿ

Լենինականի պիոներները պիոներիան լենինյան անվանակոչելու 60-ամյակի առթիվ պուրակներ ստեղծեցին Մերկուրովի տուն-թանգարանի, ժողովրդական ճարտարապետության և կենցաղի թանգարանի բակում ու մերձակա տարածքում։ Շաբաթօրյակների և կիրակնօրյակների օգնությամբ պիոներ-դպրոցականները տնկեցին 6 հազար ծառ ու թուփ։ Պիոներական ծառուղի ստեղծվեց պիոներների պալատի շրջակայքում, Կոմերիտմիության 50-ամյակի անվան զբոսայգին հարստացավ նոր ծաղկամարգերով, կանաչ տարածքով ու պտղատուներով։

Ծառատունկին իրենց մասնակցությունն են բերում նաև զանազան առիթներով Լենինական ժամանած մրցակից քաղաքների պիոներական պատվիրակությունները։ Պիոներների պալատի 60-ամյակի կապակցությամբ հյուրընկալված պատվիրակությունները՝ Վլադիմիրի մարզի Կոլչուգինո քաղաքի պիոներների պալատի, Լվովի մարզի Բորիսլավ քաղաքի № 1 դպրոցի, Քութայիս քաղաքի պիոներների պալատի Գագարինի անվան ինտերնացիոնալ բարեկամության ակումբի, Երևանի քաղաքային պիոներների պալատի և այլ պատվիրակությունները ամենայն սիրով մասնակցեցին զանգվածային ծառատունկին։

ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ



ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# Պայծառի կատուն



ՆԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Պայծառը մի չալ կատու ուներ, գյուղից էր հետը բերել շրջկենտրոն:

— Ես մեծ կին եմ,— ասում էր շենքի հարևաններին,— բուրդ եմ գզելու, բուրդ եմ մանելու, կարկատան եմ անելու, գուլպա ու ժակետ եմ գործելու, մինչև իմ ոտքերի տակ իմ կատուն տաք-տաք չմռռա, չեմ կարող գործ անել: Էս տարիքի կին եմ, դաշտ ու սար եմ գնացել, իմ կատուն միշտ ինձ հետ է եղել:

Կատու է, հո գոմեշ չի՞, որ դռնգալով տները մտնի ու անհանգստացնի մարդկանց: Պահում է, թող պահի: Մեկը չպահի, տասը պահի, ու՞մ է խանգարում, մտածեցին շենքի բնակիչները և իրենք էլ սիրով օգտվում էին կատվի ծառայություններից: Իսկ նա մկների ոխերիմ թշնամի էր, ում տանը մուկ էր երևում, Պայծառի կատուն էին ասում ու դիմում պառավին:

— Տարե՛ք,— սիրով, հպարտությամբ համաձայնում էր նա:

Պայծառը լավ եղանակներին բակում էր մանում ու գզում: Հոգնում էր թե սովում, ներքևի հարկի ում դուռը պատահեր, թակում էր ու ներս մտնում:

— Համեցե՜ք, Պայծա՛ռ տատ,— ջերմությամբ ու մտերմորեն ներս էին հրավիրում: Նրա կատուն անարգել հյուրընկալվում էր նաև մոտակա այգիների ծառերին, խոտի դեզերի վրա հանգիստ ննջում, բարձրանում տանիքները, այնտեղից դիտում հեռուների անցուդարձը, մեծ ճանապարհների անվերջանալի շարժումները: Այդ օրն էլ վարսավիր Ալբերտի այգում մի քիչ աջ ու ձախ պտտվեց, կարծես տրամադրություն չուներ երկարման գալու: Աշնան արևն էլ շատ էր շոյում մեջքն ու պոչը, այնքան շոյեց, որ էլ չդիմացավ այդ հաճույքին, հանգիստ ոտքերը ձգեց ու կիսակողքի պառկեց եգիպտացորենի նոր դարսած ցողունների վրա:

Ալբերտի աղջիկ Քնքուշը մի շաբաթվա նշանված էր: Քնքուշը երգչուհի էր, կուլտուրայի տան ինքնագործ խմբի մենակատարներից: Գառնիկը նրա երգելու վրա էլ սիրահարվել էր: Մայրը շատ ոտքը դեմ տըվեց, թե՝ նա ուզելու բան չի, դպրոցը մի կերպ ավարտեց, երգելու համար ավարտեցրին, ցերեկները ծամոնը բերանից չի հանում, շաշ-շաշ ծիծաղի մասին էլ չեմ ասում, նրանից ի՞նչ կին դուրս կգա:

Միշտն ասած, Քնքուշը իսկապես լուրջ աղջկա տպավորություն չէր թողնում, ուշքն ու միտքը ծիծաղին ու երգին էր տվել: Բայց շատ գեղեցիկ էր, շատ էլ լավ էր երգում: Երգից հետո հանդիսատեսները երկար ծափահարում էին, իսկ նա անհոգ ծիծաղում էր: Քանի անգամ բեմ հրավիրեին, կերգեր, մինչև լույս էլ թողնեին, բեմից չէր իջնի: Գառնիկը հենց դահլիճում էլ սիրահարվեց:

— Ա՜խ... շաշ-մաշ ծիծաղե՜լը...— վերջին անգամ թույլ-թույլ առարկեց Գառնիկի մայրը, և մի քանի օրից հետո մեծ նվերներով նշանդրեք արեցին:

Ով մոտենում էր նվերը տալու, Քնքուշը նախ այտն էր դեմ անում, որ համբուրեն, հետո մատը, որ մատանի հագցնեն: Իսկ ծիծաղը կար ու կար: Տիկին Ցողիկը իր տղայի լրջությանն էր նայում, հարսնացուի թըռվըռոցին, սրտից արյուն էր կաթում: Իսկ ամուսնու հոգը չէր: Կենացներ էր ծաղկեցնում, ուտում, խմում, հարսի հետ կչկչացնում, տղայի հետ կատակներ անում:

Նշանից մի քանի օր անց, պայծառ մի առավոտ, Քնքուշը մտավ այգի, ծառերի տակով գնաց եկավ, ետ ու առաջ քայլեց, հետո նկատեց անհոգ պառկած կատվին, զգույշ մոտեցավ ու հենց նրա մոտ, ցողունների վրա նստեց: Սկսեց մատի մատանիների հետ խաղալ, մի մատից հանում, մյուսին էր հագցնում, հետո անցավ ականջօղերին, նորից մեկից հանեց, մյուսին հագցրեց, իրեն-իրեն ժպտալով, իրեն-իրեն ծիծաղելով: Հետո վզի ոսկե հաստ շղթան հանեց, ձեռքի մեջ խաղացրեց, արևի տակ ոսկին փայլփլում էր, իսկ նա հիանում էր: Հետո չգիտես ինչ անցավ գլխով, կատվին գրկեց ու շղթան փաթաթեց կատվի մեջքով ու վզով: Շղթան բավականին երկար էր և մի քանի անգամ գրկեց կատվի իրանն ու վիզը: Քնքուշը նայեց ու հիացավ, նայեց կատվի աչքերին ու հիացավ, հետո կատվին ցած դրեց, հիմա էլ այդպես մի քիչ հեռվից նայեց: Շղթան արևի տակ ավելի էր փայլփլում:

— Ի՜նչ գեղեցիկ է,— Քնքուշը հիացմունքով շշնջաց ու շուրջը նայեց: Իսկ կատուն կարծես հասկանալով, որ աղջիկը ուզում է իր արածով ուրիշներին էլ հիացնել, երեսը դժգոհ թեքեց ու մի ցատկով անցավ հարևանի ցանկապատը:

— Վա՜յ,— Քնքուշը վեր թռավ ու վազեց կատվի հետևից, կատուն ավելի բարձր թըռիչք գործեց ու նստեց խոտի դեզին,— վա՜յ,— ճչաց Քնքուշն, ապա սկսեց կատվին աղաչել.

— Փիսո՜ ջան, ցա՜վդ տանեմ, էդ իմ նըշանի շղթան է, ոսկի է, հազար ռուբլի արժե, Գառնիկի հայրն է նվիրել, խնդրու՜մ եմ, աղաչու՜մ եմ...

Կատու դու կատու, ոսկե շղթայով զարդարված, արևի պլպլացող ճառագայթները վրան, իսկի հոգը չէր, թե ինչ է խնդրում երգչուհի Քնքուշը, ինչու է այդպես աղաչում, պաղատում:

Դեպքին առաջինը վրա հասավ փոստատար Բավականը:

— Աղջի՛, էդ խի՞ ես աղոթում,— հարցրեց հեգնանքով, բայց և իսկույն նկատեց կատվին, ու աչքերը չռվեցին,— վա՜յ, քոռանա՜ քո մերը, էս քո հերթական շաշությունը կլինի: Վա՜յ...— սա էլ այնպես բարձր գոռաց, որ դպրոցից տուն դարձող ուսուցչուհի Վալյան լսեց ու մեխվեց տեղում:

Հետո հավաքվեցին ու հավաքվեցին: Տղամարդ, կին, երեխա...

Ակնթարթ չէր անցել, դեզը պաշարել էին: Քնքուշի մայրն էլ հայտնվեց, ինչ-որ մեկը վազեց վարսավիրանոց, իմաց տվեց Քընքուշի հորը՝ Ալբերտին, խեղճը լեղապատառ իրեն այստեղ գցեց, սպիտակ խալաթը հագին, բաց ածելին մատների արանքում:

Կատուն բազմել էր դեզի գլխին ու միտք չուներ իջնելու: Մեկն առաջարկեց սանդուղք դնել, բարձրանալ: Դպրոցի տնտեսվար Ռաֆիկը, որ աշակերտների հետ այդտեղ էր վազել, գործնական տեսքով առաջ եկավ.

— Առանց սանդուղքի էլ կբարձրանամ, միայն օգնեցե՛ք:

Հարյուր մարդ կար, անմիջապես ուսները դեմ արեցին, Ռաֆիկը ճարպիկ շարժումներով կանգնեց նրանց ուսին, խոտի մեջ հենարաններ որոնելով բարձրացավ: Համարյա հասել էր գագաթին, կատուն խոտի խշշոցից վեր թռավ ու մի ցատկով կանգնեց ծառին, այնտեղից էլ մի ուրիշ ծառի, այնտեղից էլ հաջորդ ցանկապատն անցավ: Հասկանալի է, մարդը չի կարող նման արգելքները նույն հաջողությամբ հաղթահարել, և բազմությունը մնաց շվարած կանգնած՝ հայացքը կատվին: Դպրոցականների համար դա զվարճալի խաղ էր, ում ոտքը բռնեց, կատվի հետքերով սըլացավ: Կատուն բոլորին խաբս տվեց և կարծես նրանց ավելի բորբոքելու թե ծաղրելու համար հայտնվեց չորսհարկանի բնակելի շենքի գլխին: Հիմա էլ շենքը պաշարեցին: Կատուն հանգիստ ճեմում էր շենքի տանիքին, գնում ու գալիս՝ արևի տակ պըսպըղացնելով մեջքին օղակված ոսկե շղթան, կարծես բազմությունը հավաքվել էր դիտելու և հիանալու կատվի զարդարանքով:

— Երևում է, սա էստեղից իջնելու միտք չունի: Զավենին գտնենք՝ գա՝ բալքի սպանի: Ուրիշ ճար չկա:

Աբոյի ընկեր Գարուշի առաջարկությունը խելքին մոտիկ համարեցին ու մի քանի հոգով վազեցին որսորդ Զավենի տուն, որ այնքան էլ հեռու չէր: Զավենը գրիպով հիվանդ պառկած էր, գլուխը բրդե շալով փաթաթած, ձայնը հազիվ էր դուրս գալիս: Տըղաներին լսեց և կտրուկ պատասխանեց.

— Չէ՛:

— Ո՞նց թե՝ չէ: Չէ-ով բան դուրս չի գա,— բորբոքվեցին:

— Չէ՛ ու չէ՛,— Ջավենը երեսը դեպի պատը շրջեց՝ անկոտրում ու վճռական: Տղերքը զոռով նրան տեղաշորից հանեցին, խալաթը զոռով վրան քաշեցին, բոբիկ ոտքերով դուրս բերեցին: Մելն էլ հրացանը գտավ, բերեց զոռով ձեռքը տվեց, բայց Ջավենը չվերցրեց:

— Հասկացիր՝ հազա՞ր ռուբլիանոց է, նշանի՞ է, Աբոն մեղք է, Յողիկից չի պրծնի...

— Հազար չէ, քսան հազար էլ լինի, ես էսքան ժողովրդի մեջ հրացան չեմ կրակի, էն էլ կատվի վրա:

Տղերքը հուսահատված իրար նայեցին, գլուխները օրորեցին, վերջին ճիգով նորից դարձան դեպի որսորդ Ջավենը:

— Ծատ էլ խղճով չես,— հեգնեցին,— ամեն կխտար ու նապաստակ ես սպանում, հիմա կատվին մեղք եկա՞ր:

— Հա՛, սպանում եմ,— Ջավենն էլ իր հերթին բորբոքվեց,— կխտար էլ եմ սպանում, կաքավ էլ, նապաստակ էլ, արջ էլ, գայլ էլ, մարդ էլ, կին էլ, ձեզ էլ, ինձ էլ, համա կատու չեմ սպանի: Հասկացա՞ր:

Ջավենը տուն մտավ, էլ չկարողացան նրան անկողնուց հանել:

Ամբոխի մեջ էր նաև կատվի տիրուհին՝ Պայծառը: Կանանցից մեկը հանկարծ գյուտ արեց.

— Պայծա՛ռ տատ, քո կատուն է, ձայնիդ սովոր: Կանչի՛ր, բալքի քեզ լսի:

— Հա՛, ճիշտ է ասում,— այս ու այն կողմից արձագանքեցին ուրիշները: Պայծառը համաձայնեց ու բազմության մեջ հարմար դիրք ընդունելով սկսեց.

— Արի՜, արի՜, փիսո՜ ջան: Ի՛մ փաշա, ի՛մ գլավնի, ի՛մ պրիստավ, աշխարհով մեկ, շրջանով մեկ ազի՜զ իմ փիսո... արի՜, արի՛, տես ինչ անուշ, անուշ պատառներ եմ տալիս քեզ... արի՜, արի՜...

Բայց կատուն ուշադրություն չդարձրեց տիրուհու խնդրանքին: Երևի արդեն ձանձրացել էր նույն տեղում այդքան երկար իրեն ցուցադրելուց, շրջվեց տանիքի մյուս կողմը, որտեղ մեծ ճանապարհն էր, ավտոմեքենաների անվերջանալի շարժումները... մի հայացքով չափեց մեծ ճանապարհի լայնությունը և, առանց ետ նայելու, չորսհարկանի շենքի գլխից թռավ, անցավ ճանապարհը, մտավ նեղ, գյուղական ծուռումուռ փողոցները ու՝

— Տղա եք, հասեք....

Կորավ ու կորավ:




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Կար ժամանակ, որ փղերը միշտ վեր էին նայում, ցած չէին նայում, արհամարհում էին իրենցից փոքր ամենքին ու ամեն բան, ոտքի տակ տալիս ու տրորում:

Ամենից շատ տուժում էին մրջյունները: Նրանք շատ խնդրեցին փղերին, աղաչեցին, որ ցած նայեն, տեսնեն իրենց և ոտքի տակ չտան, իրենք նույնպես բնության զավակ են, ապրել են ուզում: Բայց ու՞մ կասես. փղերը նրանց ծաղրում էին, բանի տեղ չէին դնում, լսել անգամ չէին

ուզում:

Մրջյունները որոշեցին վրեժխնդիր լինել: Ծիծաղելի է, չէ՞. մրջյունները ուզում են վրեժխնդիր լինել փղերից: Բայց մի՛ շտապեք ծիծաղել, մի քիչ համբերե՛ք:

Մրջյունները հավաքվում են ժողովի, խորհրդակցում, առաջարկում, վիճում, վերջապես համաձայնության են գալիս և որոշում իրենց անելիքը. հարձակվում են փղերի վրա... այո՛, այո՛, հարձակվում են: Ոտքերի վրայով, գետնին հասնող կնճիթների վրայով բարձրանում, տարածվում են փղերի վրա, մտնում են բերանը, ականջների մեջ, ծակում են մաշկը, թեպետ շատ են չարչարվում, քանի որ փղերի մաշկը շատ է հաստ: Հետո ծակում են մկանները, հասնում են մինչև թոքերն ու սիրտը:

Փղերը հանգստություն չեն ունենում. քոր է գալիս մարմինը՝ քորել չեն կարող, սուկալի ցավեր են զգում՝ բուժվել չեն կարողանում: Սատկում են շատերը, նուրանում են նրանց շարքերը, բայց չեն կարողանում հասկանալ, թե որտեղից կամ ումից եկավ էդ մեծ փորձանքն իրենց...

Վերջապես քիչ-քիչ հասկանում են, որ իրենք զոհ են գնում մրջյուններին: Թեպետ դժվար էր հաշտվել այն մտքի հետ, որ փոքրիկ մրջյուններին զոհ են գնում հսկա փղերը, նույնիսկ վիրավորական էր, բայց փաստ էր, հերքել կամ ժխտել չես կարող:

Հիշում են, թե ինչպես իրենք ծաղրում էին նրանց, արհամարհում, ոտնատակ տալիս նրանց աղաչանքը, խնդրանքն անգամ լսել չէին ուզում: Եվ ահա մրջյուններն ըմբոստացել են, վրեժ են լուծում...

— Մենք պարտված ենք, մենք հաշտություն ենք խնդրում, խոստանում ենք հարգել ձեր արժանապատվությունը, չտրորել ձեզ,— հայտարարում են փղերը:

Մրջյունները բարի են, խաղաղասեր: Երբ փղերը հաշտության ձեռք են մեկնում և խոստանում հարգել նրանց ապրելու իրավունքը, մրջյունները հաշտվում են: Կնքվում է հաշտության պայմանագիր և այդ պայմանագիրը չի խախտվել մինչև օրս:

Ասում են՝ դրանից հետո է, որ փղերը միշտ ցած են նայում, ոտքերն զգույշ են դնում գետնին, որ մրջյուն չտրորեն:

Խաղաղ ու հաշտ ապրելը բոլորի համար լավ է:



ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

# ԱՐԵՎԻԿԸ, ԱՐԵՎՆ ՈՒ ԱՐԵՎԱԾԱՂԻԿԸ

Ելավ ձորի՞ց, սարի՞ց իջավ,
Դաշտի՞ց եկավ, թե՞ անտառից...
Եկավ անտես ու անաղմուկ
Ու ներս մտավ պատուհանից
մեղմիկ քամին,
Դեմքը շոյեց քնքուշ-քնքուշ,
Քունը առավ ջինջ աչքերից,
թռավ-գնաց...
Անուշ քնից աղջիկն ելավ:
Փոքրիկ աղջիկ. աչքերը՝ ջինջ,
Դեմքը՝ պայծառ,
Վարսերը շեկ—արևի շող:
Թռվռալով, երգը շուրթին,
Աղջիկն ուրախ մտավ այգի՝
Դեմքը թրջեց արծաթ-շաղով:
Տեսան նրան ծիտ ու մեղու.
— Ինչ պայծա՜ռ ես, արև. շողում:
— Արևը չեմ,— աղջիկն ասավ,—
Արևն ահա ծագում է վառ
Ու երկիրքը ոսկեզօծում:
— Դու արևի հուր ծաղիկն ես,—
Ուրախ բզզաց մի ծիր մեղու:
— Չէ՜, արևի ծաղիկը չե՛մ,—
Աղջիկն ասավ. մատը ուղղեց
սիրուն ծաղկին,
Սիրուն ծաղկին՝ թերթիկներով
ոսկեղեղին.
Պայծառ դեմքը՝ արեգակին:
— Իսկ ո՞վ ես դու, իսկ ո՞վ ես դու,—
Չիվ կանչեցին ծիտ ու մեղու:
— Արևի՜կն եմ, Արևի՜կը.—
Ասաց աղջիկն, ուրախ ծպտաց:
Ինչպես արև, ինչպես ծաղիկն
արեգակի:

# ՃԱՆԱՊԱՐՀԻ, ՃԱՄՓԱԳՈՂԻ ԵՎ ԻՄ ՄԱՍԻՆ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Մի մարդ տեսա,
Մարդ մի ասի,
Այլ՝ մի արջ։

Մրթմրթալով
Ճանապարհն էր
Փաթաթում,

Գորգ էր ասես
Փռված ճամփան
Իր համար,

Փաթաթում էր՝
Փրփրակալած
Ու համառ։

Դողում էի
Ես զայրույթից
Ու վախից...

Բայց, երբ եկավ,
Չար ու ագահ,
Հասավ ինձ,

Ահ ու սարսափ
Միանգամից
Մոռացա։

Դեմը ելա
Ու գոռացի
Զայրացած.

— Դու հո չե՞ս գժվել,
Ի՞նչ ես անում,
Մեր ճանապարհը
Ո՞ւր ես տանում։

Այս ճանապարհը
Պապս է բացել,
Այս ճանապարհով
Հայրս է անցել։

Կարծում ես, ի՞նչ է,
Անտե՞ր է նա,
Դու՛ րս եկ մեր ճամփից,
Թող ու գնա։—

Կանգնեց մի պահ,
Նայեց նա ինձ
Վերից վար,

Ասաց՝ պետք չէ
Այս աշխարհում
Ճանապարհ։

Աշխարհն, ասաց,
Մի գնդակ է
Գլորվող,

Էլ ի՞նչ ճամփա,
Ճամփան ու՞մ է
Հարկավոր...

Փաթաթում եմ՝
Տանեմ նետեմ
Կիրճը խոր։

— Ո՛չ,— ճչացի ես,—
Ի՛նչ ես ասում,
Մեր ճամփան տանել
Թույլ չեմ տա քեզ։

Քեզ պետք չէ, բայց մեզ
Պետք է ճամփան,
Պետք է, որ մարդիկ
Գնան ու գան։

Մարդն առանց ճամփա,
Թռչուն է խեղճ՝
Երկնքից ընկած
Քարերի մեջ...

Նա՝ բերանը բաց,
Ջիլ քրքջաց,
Հրեց ինձ մի կողմ,
Առաջ գնաց։

Քար էր մնում,
Փոս էր մնում
Ետևից,

Նման էր նա
Հեքիաթային
Մի դևի։

Մոտենում էր
Արդեն կիրճին
Անհատակ:
Քրքջում էր.
— Չկա ոչ մի
Նպատակ:

Թե ուզում ես՝
Դառնամ քեզ էլ
Փաթաթեմ,
Այս ճամփի հետ
Տանեմ, կիրճից
Վար նետեմ:—

Դմբդմբում էր
Արձագանքը
Քրքիջի...

Դներ էին
Ասես ելնում
Մութ կիրճից:

— Ի՞նչ անեմ,— ասի,—
Ես ի՞նչ անեմ.
Այս աղետի առաջը
Ինչպե՞ս առնեմ:

Թող որ նա լինի
Նոր Կոզբադին...
Բայց ես էլ, ախր,
Թոռն եմ Դավթի:

Կռացա իսկույն.
Մի քար առա
Եվ քարն իմ ձեռքից
Երկինք թռավ:

Թռավ, այդ մարդուն
Առավ իր հետ
Եվ տարա՜վ, տարա՜վ,
Տարավ անհետ:

Ուզեցի ուրախ ճչալ
Եվ տեսա նոր բան.
Բացվող գորգի պես ծալ-ծալ
Գալիս էր ճամփան:

— Գնանք...— դարձավ ինձ, ասաց,—
Աշխարհից աշխարհ,
Գնանք,— ասաց,— կամրջենք
Աշխարհներին իրար...

— Համաձա՜յն եմ,— կանչեցի
Ու առաջ անցա
Եվ ինքս իմ զիլ կանչից
Քնից արթնացա:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 17. ՍՏՈՐԵՐԿՐՅԱ ԼԻՃԸ

Տարիներ շարունակ մենք Հայաստանում կարստային այրեր էինք որոնում և ի վերջո գտանք: Շատ էինք ուզում գտնել նաև ստորերկրյա գետեր ու լճեր: Այս անգամ էլ եղան մարդիկ, որոնք համառորեն պնդում էին, որ Հայաստանի կարստային քարանձավներում ջուր լինել չի կարող: Մերը, իբր, չոր կարստեր են: Նրանց համոզվածության պատճառը երկրաբանական բազմաթիվ տեսություններն ու կարծիքներն էին: Մենք այդ տեսություններով նախապաշարված չէինք:

Ջրնգաձ վիհի և Ջրաշաձ դահլիճի առվակները և Ախտա Ծակերի ու Հովվի քարայրների լճակները, վերջապես, Սատանի կամուրջը արդեն ինչ-որ բան նշանակում էին: Բայց մենք շարունակում էինք որոնել մեր տեսակետը հաստատող ավելի ակնառու փաստեր: Վերջապես գտանք, և այն էլ ինչպիսի՜ք: Այդ գործում անսպասելի կերպով մեզ «օգնության հասան» Արփա-Սևանի շինարարները: Քանի որ մենք մի քիչ ուշ հայտնըվեցինք այնտեղ, ավելի լավ է լսենք, թե ինչ է պատմում «Տեխնիկա մոլոդյոժի» ամսագրի թղթակից Ա. Պերևոզչիկովը.

«— Այստեղ թունելագործները հանդիպեցին սորուն կավերի,— ասում է տեղամասի պետ Սարգսյանը,— նման դեպքերում լեռնագործներին օգնում է ցուրտը: Բայց այսպիսի խորության դեպքում ինչպե՞ս տեղ հասցնել սառեցնող սարքավորումը, քաշել կոմունիկացիաները...

Բայց և այնպես ելքը գտան շինարարները. բետոնե խցան խրեցին և սորուն կավերը քողարկելով, սկսեցին այդ հատվածի հորատանցումը:

— Մի քիչ առաջ գնացինք ու դեմ առանք ջրաբեր հորիզոնի,— շարունակում

է պատմել Սարգսյանը»:

Նրանց կանգնեցնում է հսկայական ուժի ջրի ժայթքումը: Ծիթը, որը գնահատվեց 400—500 լիտր մեկ վայրկյանում, սպառնում էր լցնել հորատանցքը: Պոմպերը յարվածությունից խեղդվում էին, իսկ ջուրը շարունակում էր ավելանալ:

Հորատանցքի պետ Ռոբերտ Արիստակեսյանը համենայն դեպս կարողացավ հասնել այն խորխորատին, որտեղ ճողփում էր ստորերկրյա գետը: Լապտերի ճառագայթը անզոր էր լուսավորելու մի քանի տասնյակ մետր կտրվածքով քարանձավը: Այնտեղ որոտաձայն գոչյունով իր համար ճանապարհ էր հարթում մոլեգնած ջրվեժը:

Արիստակեսյանին հաջողվեց մտնել շիթի տակ և նայել սև, մռնչացող անցքին: Բայց հանկարծ նա ճոճվեց, ակընթարթային շնչահեղձություն զգալով: Գա՞զ... նման չէր: Հապա ի՞նչ է: «Վակուում է»,— կայծակեց նրա ուղեղում, ջրի շիթի էլեկտրային ազդեցությունը:

Եվ դրանից հետո լեռնագործները իրենց ջանքերի կեսը ծախսեցին ջրի դեմ պայքարելու վրա:

Տեղամասի պետը ռետինե անջրանցիկ հանդերձանքով մտնում է անցքից երևացող քարանձավը, ուր թափվում էր ջրվեժը:

Պարզվում է, որ դա մոտ ութսուն մետր երկարությամբ և տասնհինգ մետր լայնքով մի մեծ անձավ է, նրա հատակին ծփում էր ստորերկրյա լիճը: Լճի խորությունը չափում են, իմանում, որ հասնում է մեկից մինչև երեք մետրի: Լճի հատակին ցցեր են խփում, ցցերի վրա տախտակամած կապում ու համարյա չորս մետր տրամագծով բետոնե խողովակ սարքում, որը լճի վրայով ձգվում էր անձավի մի ծայրից մյուսը: Դա ջրատար թունելի շարունակությունն էր, նրա միջով էին հոսելու Արփայի ջրերը: Քարանձավն իր շառաչող ջրվեժով և խորհրդավոր լճով մնում է բետոնե պատերից դուրս:

Մարդիկ բետոնի մեջ մի մեծ խողովակ են տեղադրում, որտեղով ստորերկրյա գետի ջրերը լցվում են թունելը և վազում դեպի Սևան: Վայրկյանում կես խորանարդ մետր: Դա Սևան լցվող ջրերի համարյա հինգ տոկոսն է: Դա էլ քարանձավների նվերը համարենք մայր Սևանին:



ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

# ԱՆՋՐԵՎՈՏ ԺՊԻՏ

Երկինքը լողացնում է ծառերին:
Բլուրների և դաշտերի վրա
Սփոփանքի նման
իջնում է բարությունը:

Հեղուկ լույսերը ցայտում են
քար ու քարափներից,
անձրևի փոշին թրթռում է
մի անուշ զովության մեջ:

Խոտերի միջից
դեպի վեր են ձգվում
գույնզգույն սարսուռները:
Ծուտով թիթեռներն ու ծաղիկները
կխառնվեն իրար:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Ռ. ԳՈՍԻՆՆԻ
(ֆրանսիացի գրող)




Այսօր շատ ուրախ ենք դպրոց եկել. ուսուցչուհին ասել է, որ լուսանկարվելու ենք և դա հիշատակ է մնալու մեր ողջ կյանքում: Ասել է նաև, որ խնամքով հագնըվենք ու սանրվենք:

Երբ ես դպրոցի բակը մտա, գլուխս փայլում էր բրիլիանտինից: Տղաներն արդեն հավաքվել էին, և ուսուցչուհին բարկանում էր Ժոֆրուայի վրա, որովհետև նա եկել էր մարսեցու կոստյումով: Ժոֆրուայի հայրը անչափ հարուստ է և ինչ-որ Ժոֆրուան ուզի, գնում է: Ժոֆրուան ասաց ուսուցչուհուն, որ ուզում է մարսեցու հագուստով նկարվել, իսկ եթե չի կարելի, նա ընդհանրապես չի նկարվի:

Լուսանկարիչն էլ էր արդեն եկել, և ուսուցչուհին նրան ասաց, թե՝ որքան կարելի է շուտ նկարիր, հակառակ դեպքում մեր թվաբանության դասը կկորչի: Անյանն ասաց, որ շատ ափսոս կլինի, եթե թվաբանության դասը կորչի, որովհետև ինքը թվաբանություն շատ է սիրում և այսօրվա համար հանձնարարված բոլոր խնդիրները լուծել է: Էդն ուզում էր Անյանի քթին մի լավ հասցնել, բայց Անյանն ակնոցավոր է, այնպես որ մի կարգին հասցնել էլ չես կարող: Ուսուցչուհին սկսեց գոռգոռալ, որ մենք անտանելի երեխաներ ենք և, եթե այս խայտառակությունը շարունակվի, մենք ամենևին էլ չենք լուսանկարվի, այլ անհապաղ դասի կգնանք: Այստեղ լուսանկարիչն ասաց.

— Ոչի՜նչ, ոչի՜նչ, մի՛ հուզվեք, ես գիտեմ երեխաների հետ խոսելու ձևը, կըտեսնեք, որ ամեն ինչ լավ կլինի:

Նա որոշեց մեզ երեք շարք կանգնեցնել. նրանք, ովքեր առաջին շարքում են, կնստեն գետնին, ովքեր երկրորդում՝ աթոռին նստած ուսուցչուհու երկու կողքերին կկանգնեն, իսկ ովքեր երրորդ շարքում են, արկղերի վրա կկանգնեն: Այս նա հոյակապ էր հորինել:

Արկղերը բերելու համար գնացինք նկուղ: Նկուղում շատ ուրախ էր, որովհետև այնտեղ մութ էր, Ռյուֆուսն էլ մի պարկ էր հագցրել գլխին ու գոռում էր. «Ո՜ւ, ես ուրվակա՜ն եմ»: Բայց եկավ ուսուցչուհին: Նա այնպես բարկացավ, որ մենք իսկույն վերցրինք արկղերն ու դուրս թռանք նկուղից: Միայն Ռյուֆուսը մնաց: Պարկը գլխին նա ոչինչ չէր տեսնում և շարունակում էր գոռալ. «Ո՜ւ, ես ուրվական եմ»: Ուսուցչուհին հանեց նրա գլխից պարկը, և նա չափազանց զարմացավ:

Ուսուցչուհին Ռյուֆուսի ականջից բռնած դուրս բերեց բակ, բայց իսկույն թողեց նրա ականջը, բռնեց իր գլուխն ու ասաց.

— Տե՜ր աստված, դուք լրիվ սևացել եք:

Նկուղում մենք իսկապես էլ մի քիչ կեղտոտվել էինք: Ուսուցչուհին բարկացավ, իսկ լուսանկարիչն ասաց, որ սարսափելի բան չկա, մինչ ինքը արկղերը դասավորի, մենք կլվացվենք: Բացի Անյանից, մեկ էլ Ժոֆրուայի դեմքն էր մա-

քուր, որովհետև նրա գլխին մարսեցու սաղավարտ կա, իսկ և իսկ կերակրի մեծ կաթսա՝ միայն առանց բռնակների:

— Տեսնո՞ւմ եք,— ասաց Ժոֆրուան,— եթե բոլորն ինձ նման հագնվեին, ամեն բան կարգին կլիներ:

Երևում էր, որ ուսուցչուհին շատ է ուզում Ժոֆրուայի ականջները քաշել, բայց չէ՞ որ նրա կաթսան առանց բռնակների էր, և ուսուցչուհին բռնելու տեղ չուներ: Այո, մարսեցու հագուստը իսկապես որ լավ բան է եղել:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



Մենք լվացվեցինք, հարդարեցինք մեր մազերն ու վերադարձանք բակ: Իրար վրա ջուր էինք ցանել և մի քիչ թաց էինք, բայց, լուսանկարիչն ասաց, որ սարսափելի բան չկա, լուսանկարում դա չի երևա:

— Հիմա ի՞նչ կասեք,— տղանե՛ր,— ասաց լուսանկարիչը,— ուզո՞ւմ եք ուրախացնել ձեր ուսուցչուհուն:

Մենք պատասխանեցինք, թե՝ ուզում ենք, որովհետև շատ ենք սիրում մեր ուսուցչուհուն, նա ընդհանրապես բարի է, երբ չի բարկանում:

— Այդ դեպքում,— ասաց լուսանկարիչը,— արագ կանգնեք ձեր տեղերը, որ ես ձեզ նկարեմ: Ամենաբարձրահասակները թող արկղերի վրա կանգնեն, ով ավելի ցածրահասակ է, գետնին կանգնի, իսկ ամենափոքրերը թող նստեն:

Մինչ մենք գրավում էինք մեր տեղերը, լուսանկարիչը բացատրում էր ուսուցչուհուն, որ երեխաների հետ աշխատելիս՝ գլխավորը համբերությունն է, որի դեպքում կարելի է ուզածին հասնել: Սակայն ուսուցչուհին մինչև վերջ չկարողացավ լսել նրան: Նա ստիպված էր մեզ իրարից բաժանել, որովհետև բոլորս էլ ուզում էինք արկղերի վրա կանգնել: Էդը բղավում էր.

— Ե՜ս եմ ամենաբարձրահասակը,— և այս ու այն կողմ էր հրում բոլորին, ով որ ուզում էր արկղի վրա կանգնել: Ժոֆրուան չէր իջնում, և Էդը բռունցքը մարսեցու կաթսային խփեց ու խիստ ցավեցրեց: Իսկ մյուսները ստիպված էին հանել Ժոֆրուայի գլխից աննիծյալ կաթսան, որովհետև նրա գլուխը լռվել էր դրա մեջ:

Ուսուցչուհին ասաց, որ վերջին անգամ է մեզ նախազգուշացնում, եթե մենք նույն ոգով շարունակենք, անհապաղ դասի կգնանք: Այստեղ մենք որոշեցինք մեզ կարգին պահել և կանգնեցինք մեր տեղերը: Ժոֆրուան մոտեցավ լուսանկարչին և հարցրեց.

— Իսկ ի՞նչ մակնիշի է ձեր ապարատը:

Լուսանկարիչը ժպտաց ու ասաց.

— Հիմա, տղա՛ս, մի թռչնակ դուրս կթռչի այս արկղից:

— Ձեր արկղը հնացած է,— ասաց Ժոֆրուան,— հայրս ինձ մի ապարատ է նվիրել, ա՜յ ապարատ եմ ասել, «Կարֆ» ֆոկուս ունեցող օբյեկտիվով, հեռաֆոկուս օբյեկտիվով և, իհարկե, լուսաֆիլտրներով:

Լուսանկարիչը մի տեսակ շփոթվեց, ժպիտը չքացավ նրա դեմքից, և նա Ժոֆրուային ասաց, որ տեղը կանգնի:

— Գոնե ֆոտոէլեկտրական խցիկ ունե՞ք,— հարցրեց Ժոֆրուան:

Լուսանկարիչը, չգիտես ինչու, սաստիկ բարկացավ ու բղավեց.

— Վերջի՛ն անգամ եմ ասում, գնացե՜ք ձեր տեղը:



Բոլորը կանգնեցին իրենց տեղերում: Ես նստեցի գետնին, Ալցեստի կողքին: Ալցեստն իմ ընկերն է, նա շատ հաստ է և շարունակ ծամում է: Նոր էր նա մուրաբայով բուլկուց մի կտոր կծել, որ լուսանկարիչը կարգադրեց նրան դադարել ծամելը, այն ժամանակ Ալցեստն ասաց՝ ինքը սոված չի՞ մնալու:

— Նետի՛ր բուլկիդ,— բղավեց ուսուցչուհին, որ ճիշտ Ալցեստի ետևն էր նստած:

Հանկարծակիի գալով, Ալցեստը բուլկին իր բլուզին քսեց:

— Ա՜յ քեզ բան,— ասաց Ալցեստն ու հացի կտորով փորձեց մաքրել մուրաբայի հետքը:

Ուսուցչուհին ասաց, որ միակ ելքը Ալցեստին վերջին շարքում կանգնեցնելն է, որպեսզի նրա բլուզի վրայի բիծը չերևա: Եվ նա ասաց.

— Է՛դ, տեղդ զիջիր ընկերո՛ջդ:

— Նա իմ ի՛նչ ընկերն է,— պատասխանեց Էդը,— տեղս նրան չեմ զիջի: Ավելի լավ է թող մեջքով դեպի ապարատը նստի, այդ դեպքում ո՛չ բիծը կերևա, ո՛չ էլ նրա հաստ մռութը:

Ուսուցչուհին բարկացավ և որպես պատիժ հրամայեց Էդին վերլուծել «Ես չըպետք է հրաժարվեմ տեղս զիջել ընկերոջս, որը մուրաբա է քսել իր բլուզին» նախադասությունը: Էդը ոչինչ չասաց, ցած թռավ արկղի վրայից ու գնաց առաջին շարք, իսկ Ալցեստը՝ վերջին: Դրանից մի փոքր անկարգություն տեղի ունեցավ, հատկապես, երբ Էդը Ալցեստի կողքից անցնելիս բռունցքը դիպցրեց նրա քթին: Ալցեստն ուզում էր ծնկով խփել Էդի քամակին, բայց Էդը շատ ճարպիկ էր և կարողացավ խուսափել հարվածից, հարվածը հասավ Անյանին, և դեռ լավ է, որ նա ակնոցը հանել էր: Սակայն Անյանը, միևնույն է, լաց եղավ ու գոռգոռաց, որ ինքը ոչինչ չի տեսնում, որ իրեն ոչ ոք չի սիրում և որ ինքը մեռնել է ուզում: Ուսուցչուհին սկսեց մխիթարել նրան, մաքրեց նրա քիթը, հարդարեց մազերն ու Ալցեստին՝ որպես պատիժ, կարգադրեց հարյուր անգամ գրել «Ես չպետք է խփեմ ընկերոջս, որն ինձ ձեռք չի տվել և որն ակնոց է կրում» նախադասությունը:

— Տեղն է քեզ,— ասաց Անյանը:

Այստեղ ուսուցչուհին նրան էլ, որպես պատիժ, նախադասություն տվեց: Անյանը այնքան զարմացավ, որ լաց չեղավ: Հետո ուսուցչուհին մեզ բոլորիս, որպես պատիժ, ինչքան ասես նախադասություններ տվեց և, ի վերջո, ասաց.

— Իմացա՞ծ եղեք, որ եթե ձեզ լավ պահեք, բոլոր հավելյալ հանձնարարությունները չեղյալ կհայտարարեմ: Արագ ձեր տեղերում կանգնե՛ք, և պարոն լուսանկարիչը թող մեզ նկարի:

Մենք չէինք ուզում վշտացնել ուսուցչուհուն և արինք ինչ որ նա ուզում էր: Կանգնեցինք մեր տեղերում ու ժպտացինք:

Սակայն լուսանկարից, որը հիշատակ պիտի մնար մեր ողջ կյանքում, բան դուրս չեկավ: Մինչ մենք աղմկում էինք, լուսանկարիչն արդեն գնացել էր: Այնպես որ իզուր էինք ժպտում:

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ



# ԳՈՒՆԱՎՈՐ ՍՏՎԵՐՆԵՐ

Սովորական սպիտակ լույսով ողողված սենյակում միացրեք սեղանի լուսամփոփը և նրա կոթառի մեջ մտցրեք կարմիր գույնի լամպ: Սեղանի վրա դրեք սպիտակ թղթի մի թերթ և լամպի ու թերթի միջև պարզեք որևէ առարկա, ասենք, գրիչ կամ մատիտ: Թղթի վրա կհայտնվի գրչի կամ մատիտի ստվերը, բայց ոչ թե սովորական սև կամ կիսասև, այլ ուղղակի գունավոր, ավելի ճիշտ, կանաչ գույնի ստվերը:

Մատիտի կամ գրչի ստվերը մեզ կանաչ է թվում շրջապատի ֆոնի պատճառով: Բանն այն է, որ կարմիր լամպի ստեղծած ֆոնը կարմրավուն լինելով հանդերձ՝ ընկալվում է որպես սպիտակավուն ֆոն, քանի որ թղթի թերթը սպիտակ է: Երևի մատիտի կամ գրչի ստվերի զբաղեցրած տեղամասում կարմիր գույնի բացակայությունը մենք ընկալում ենք որպես կանաչ գույնի առկայություն:

Բայց ինչո՞ւ անպայման կանաչ: Բանն այն է, որ կարմիր և կանաչ գույները իրար լրացնող գույներ են:

Այդպես են կոչվում այն գույները, որոնք իրար լրացնելով կազմում են սպիտակ լույս: Արևի սպիտակ լույսը բարդ լույս է և կազմված է յոթ պարզ գույներից՝ մանուշակագույն, կապույտ, երկնագույն, կանաչ, դեղին, նարնջագույն և կարմիր: Դա կարելի է հաստատել ցանկացած պահի, եթե ձեռքի տակ ունենանք ապակե պրիզմա և նրա վրա ուղղենք որևէ նեղ անցքի միջով բաց թողած ճառագայթ, այնուհետև ստացված յոթ պարզ գույները եթե գցենք մեկ այլ պրիզմայի վրա, ապա վերստին կստացվի սպիտակ լույս, ընդ որում, եթե այդ յոթ գույները պրիզմայի վրա ուղղելիս մենք որևէ անթափանց արգելք դնենք, օրինակ, կանաչ գույնի դեմ, ապա անցքի պատկերը կլինի կարմիր: Իսկ եթե արգելք դնենք դեղին գույնի դեմ, ապա ճեղքի պատկերը կստացվի կապույտ և այլն: Հենց այս իմաստով էլ կանաչն ու կարմիրը, դեղինն ու կապույտը կոչվում են իրար լրացնող գույներ:

Այս հետաքրքիր փորձը կարելի է կատարել նաև այլ գույնի լամպերով: Եթե, օրինակ, լամպը լինի կանաչ, ապա մատիտի կամ գրչի ստվերը կլինի կարմիր: Եթե լամպը լինի կապույտ, ապա ստվերը կլինի դեղին, իսկ եթե լամպը լինի դեղին, ապա ստվերը կլինի կապույտ: Ստվերը միշտ կունենա լամպի գույնը լրացնող գույն:

Նկարագրված երևույթը հաճախ կարելի է դիտել ձմռանը գազալուսային ցուցանակների օգնությամբ, երբ ձյան վրա պարզ երևում են ստվերներ, որոնց գույնը լրացնում է ցուցանակի գույնը:

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԱՄԵՆԱՄԵԾ ՀՐԱՇՔԸ

## Գաղափարագրեր



Խոսքը ծնվել է մարդու հետ, աշխատանքի, միմյանց հետ փոխհարաբերության մեջ մտնելու ընթացքում: Գիրն այդ տեսակետից ծագել է ավելի ուշ, որպես մարդու հոգեկան և կուլտուրական պահանջները, պատկերացումները ուրիշ մարդկանց հաղորդելու միջոց: Սակայն գիրն էլ խոսքի նման միանգամից չառաջացավ: Ինչպես ասացինք մեր նախորդ զրույցներում, մարդիկ նախ սովորեցին նկարել, պատկերների ձևով ճանաչել իրենց շրջապատող կենդանական և բուսական աշխարհը: Հետո, աստիճանաբար այնտեղ հայտնվեցին նաև որոշակի առարկա խորհրդանշող պատկերներ: Դրա համար էլ այժմ մասնագետներն անգամ չեն կարող ստույգ ասել, թե որտեղ է ավարտվում պատկերի միջոցով մտքի, այսպես ասած, գեղարվեստական վերարտադրումը և որտեղ ծնունդ առնում մեր հասկացողությամբ՝ իսկական գիրը: Բայց որ գիրը սաղմնավորվել է դեռևս նախնադարում, տասնյակ հազարավոր տարիներ առաջ, դա պարզ է:

**... 1822 թվականի սեպտեմբերի 14-ին իսկապես հրաշք կատարվեց. ֆրանսիացի գիտնական Շամպոլյոնն կրտսերը ներխուժելով իր ավագ եղբոր՝ առանձնասենյակը բացականչեց.**

**—Այժմ ամե՛ն ինչ իմ ձեռքում է...**

Եվ հուզմունքից ուշագնաց եղավ: Շուտով ամբողջ գիտական աշխարհն իմացավ, որ եգիպտական գրերը վերծանված են: Վերածնված էին հիերոգլիֆով գրված երկու անուն՝ «Պտղոմեոս» և «Կլեոպատրա»: Կարծես այնքան էլ մեծ բան չէր արվել, այդ անունները դրանից առաջ էլ հայտնի էին մարդկանց, սակայն գտնված էր եգիպտական՝ հազարամյակներով համրացած գրերն ընթերցելու ճիշտ եղանակը, մնացածը միայն ժամանակ էր պահանջում և ջանքեր: Այսօր արդեն, եգիպտական գրերի շնորհիվ մենք ավելին գիտենք հին աշխարհի մասին, քան այն ժամանակվա շարքային մարդիկ: Չէ՞ որ գիրն էլ մյուս գիտությունների նման ստրկատիրական Եգիպտոսում համարվել է սրբազան, աստվածային, նրանով զբաղվել են միայն քրմերն ու իշխանավորները:

Իսկ ի՞նչ էր իրենից ներկայացնում եգիպտական հիերոգլիֆային գիրը: Ահա թե ինչ. ենթադրենք դուք ուզում եք գրել՝ «զբաղմունք, ջանք, աշխատասիրություն» բառերը: Դրա համար նկարում եք մեղու կամ պիծակ: Պապիրուսի փաթեթը փարավոնների լեզվով նշանակում էր՝ «գիտենալ, գիտություն», արմավենու տերևը՝ «մեկ տարի», որովհետև հին եգիպտացիները կարծում էին, թե այդ բույսի

վրա տարեկան միայն մեկ տերև է ածում:

Հին եգիպտացիները սկզբնական շրջանում իրենց գաղափարագրերը փորագրում և կարդում էին վերից վար, հետո սկսեցին գրել աջից ձախ, երբեմն էլ՝ հակառակը: Թե որ ուղղությամբ պետք է ընթերցվեր որևէ արձանագրություն, ցույց էին տալիս այնտեղ պատկերված մարդկանց և կենդանիների դեմքերն ու ոտքերը: Միևնույն շարքի վրա նրանք բոլորն էլ ուղղված էին միևնույն կողմը:

Ժամանակակից մարդը կդժվարանա նման պատկերագրով արտահայտել իր հույզերն ու մտքերը: Լեզուն, նենդանի ղափարագրային է և առաջացել է վաղ ժամանակներում, կոչվում է սեպագիր: Սեպագրերով առաջին անգամ գրել են սումերները կամ շումերները, որոնք մեր թվարկությունից հազարամյակներ առաջ ապրում էին Միջագետքում՝ Եփրատ և Տիգրիս գետերի հովտում: Սումերները հիմնականում գրում էին կավե թաց սալիկների վրա, հատուկ փայտիկների օգնությամբ: Նրանց գրերը, որ նույնպես առաջացել էին պատկերագրերից, սեպի տեսք ունեին: Դրանք նման տեսք էին ստանում այն պատճառով, որ՝ գրելիս, երբ փայտիկը սեղմում էին թաց կավին, գծիկի սկզբնամասում սեպաձև փոսիկ



խոսքը գնալով զարգանում էր, հարըստանում, իսկ գրավոր արտահայտվելու ձևերը մնում էին քարացած: Դեռևս հին Եգիպտոսում ստիպված եղան գրերը հետըզհետե հնչյունաբանել: Հանդես եկավ վանկագիրը, որից մինչև հնչյունանշումը մնում էր արդեն շատ կարճ ճանապարհ. մնում էր, որ նշանները իրենց պատկերած բառի առաջին բաղաձայնով հաստատուն դառնան: Այսպես ահա առաջացավ 24 բաղաձայն տառից բաղկացած այբուբենը: Իսկ ձայնավորնե՞րը. ձայնավորները նրանք ավելացնում էին արձանագրությունները ընթերցելիս:

Գրի մյուս տեսակը, որը դարձյալ գաէր առաջանում: Այսօր մեզ են հասել տասնյակ հազարավոր նման սեպագիր թրծված աղյուսներ՝ արձանագրություններով, որոնք գիտնականներին շատ արժեքավոր տեղեկություններ են հաղորդում Միջագետքի ժողովուրդների կյանքի մասին:

Սումերներից հետո սեպագրերից են օգտվել նաև հին աքկադացիները՝ բաբելոնացիները, էլամացիներն ու հեթիթները, այդ թվում և հայերը:

Իր տեսակի մեջ շատ անսովոր է չինական գիրը: Այն եգիպտական գրերի նման սկիզբ է առել պատկերագրերից: Հետագայում դրան ավելացվել են նաև

լրացուցիչ նշաններ՝ յուրաքանչյուր բառի համար առանձին նշան: Չինական հիերոգլիֆները տարբերվում են աշխարհում եղած բոլոր գրերից և ստեղծված են չինարենի համար, այսինքն՝ չեն կարող օգտագործվել այլ լեզուներում, որովհետև այն նախ միավանկ է և ունի իր հնչերանգային առանձնահատկությունները: Չինական գիրը սկզբում ուներ 8800 նշան, ամեն բառի համար՝ մեկը: Հետագայում այն շատացավ, և ահա 1700 թվականին կազմված չինական բառարաններից մեկը պարունակում է 44449 բառ-նշան: Ինչպես տեսնում եք, Չինաստանում գրագիտություն սովորելու համար շատ ճիգ ու ջանք է հարկավոր: Չինացիները գրելիս մեզ նման ձախից աջ չեն գրում, այլ վերից վար՝ ուղղաձիգ սյունակներով, որոնք կարդացվում են աջից ձախ: Նրանք ըսկըզբում մետաղե կամ փայտե ձողերով գրում էին քարի, մետաղի, փայտի, ոսկրի, բամբուկի, կաշվի և մետաքսե գործվածքի վրա: Իսկ, երբ, մեր թվարկության 105-ին հայտնագործվեց չինական թուղթը, ապա նրանք սկսեցին գրել թղթի վրա, վրձինը թաթախելով տուշի մեջ:

Մյուս գիրը, որը դարձյալ իր տեսակի մեջ շատ հետաքրքրական է և մինչև վերջերս համարվում էր մեռյալ գիր, քանի որ այն ոչ ոք չէր կարողանում կարդալ՝ Ամերիկա աշխարհամասում ապրած հնագույն ժողովուրդներից մեկի՝ մայաների գիրն է: Այս գիրը, որ ավելի շատ նման է զարդանկարների, շատ ընդհանրություններ ունի մեկ այլ ամերիկյան ժողովրդի՝ ացտեկների գրի հետ: Երբ 1492 թվականին Կոլումբոսը հայտնագործեց Ամերիկան, նրա հետքերով Եվրոպայից այստեղ թափանցեցին բախտախնդիրների հազարավոր խմբեր: Նրանք եկել էին հարստանալու տենդով բռնված և երկար տարիներ իրենց ճանապարհին այրում-ոչնչացնում էին հնդկացիների ամբողջ կուլտուրան, այդ թվում նաև այն բազմաթիվ սրբազան գրքերը, որոնք պարունակում էին բնիկների հնագույն պատմությունը: Այդ գրքերից պահպանվածները այժմ գտնվում են եվրոպական թանգարաններում: Պատկերագրի և հնչյունագրի խառնուրդ հանդիսացող մայաների գիրը վերծանել փորձել են շատերը, սակայն միայն սովետական գիտնականներին հաջողվեց գտնել հնագույն և մոռացության մատնված այդ գրերի բանալին:

ՀԱՄՈ ՀԱՐՑԱՆ

# ՄՈԴԱՅԻ ՊԱՏԻԺԸ

Պապիկն ուզում էր լինել նորաձև:
Ախըր պապիկը ումի՞ց է պակաս:
Ճիշտ է, վաղուց է թոշակի անցել,
Բայց նրան մի՞թե վաթսունվեց կտաս:
Չե՜ս տա, իհա՜րկե, պարզ է լույսի պես:
Դա ինքն էլ գիտի, գիտեն բոլորը:
Եվ պապիկն ահա թոշակն հավաքեց
Ու շուկա գնաց կիրակի օրը:
Սև շուկա գնաց: Ի՞նչ առնի, ի՞նչ՝ չէ:
Այ թե ի՛նչ. ջինսե նորաձև տաբատ:
Ջի՜նս... անունն անգամ ջինջ է ու հնչեղ:
Ջի՜նս, ուրիշ ոչինչ, որոշված է այդ:
Եվ ջինսե տաբատն առած թևի տակ՝
Պապիկը զվարթ վերադարձավ տուն:
Տանն էլ, թարսի պես, ինքն էր մեն-մենակ:
«Թոռե՜լ են, տանը տիտիկ չեն անում...»
Երեք թոռներից մեկն իսկ ներկա չէր,
Որ մարդավարի մի կարծիք հարցներ:
Եվ հագավ կանգնեց հայելու դիմաց.
«Ը-ըհը՜, լավ է, բայց թե...—կմկմաց,—
Թե ամեն փողքից կտրենք երեք մատ,
Կդառնա շիք ու շիմշատ մի տաբատ»:
Եվ հենց որ ավագ թոռնիկն եկավ տուն.
— Սառա՛ ջան,— ասաց,— ջինս եմ գնել, տե՛ս:
Բայց և, թոռնի՛կս, տես ի՛նչ եմ խնդրում.
Խնդրում եմ փողքից երեք մատ կտրես:
— Լա՛վ, պապի՛կ ջան, լա՜վ,— ճլվլաց Սառան,—
Եղա՞ծն ինչ է որ՝ մի տաբատի փողք:
Ձեռքիս գործն անեմ, կանցնեմ և դրան,—
Ասաց և ծալեց ու դրեց մի կողմ:
Եվ անցավ ահա մի օր, երկու օր,
Բայց տաբատն ընկած մնաց աթոռին:
«Է՜հ, մեր Սառային դու նո՞ր գիտես որ.
Վերջ չկա նրա էգուց-էլօրին:
Եկ, լավ է, վերցնես ու տաս միջնեկին.
Քո կտորն է սա՝ կտրուկ ու մեկին»:
Եվ նա միջնեկին դարձավ այս անգամ.
— Նառա՛ ջան, էս՝ դու, էս՝ իմ տաբատը:
Ա՛ռ, ամեն փողքից կկտրես էսքան:
Տես հա՜, էգուց տաս. էգուց շաբաթ է.
(Էգուց ֆուտբոլի խաղն է Կինի):
Տոմս ճարեմ՝ դաշտ էլ գնամ երևի:



ՆԿ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Հա՜, պապի՛կ ջան, հա՜: Եղածն
ինչ է ո՛ր:
Սուսի ծնունդն է, մի հատ դիպչեմ գամ,—
Բլբլաց Նառան ու ջինսը մեծ հոր
Ծալեց ու դրեց դարակն այս անգամ:
Եվ էն դնելն էր: Դրեց, մոռացավ:
Անցավ ծնունդն էլ, ֆուտբոլն էլ անցավ:
Մեկ էլ, երբ պապիկն հիշեց տաբատը,
Անցել էր արդեն երրորդ շաբաթը:
«Գրողի տարած էս շան թուլեքը
Էստեղ ասում են, էնտեղ մոռանում...
Դե, խոսքը մեր մեջ, նույնն էինք մենք էլ.
Ես պապիս հոգին քիչ չէի հանում,
Խոսքը միշտ գցում ականջի ետև...
Զահել են, էլի, անհոգ ու թեթև:
Բայց, չէ՛, իմ Մառան իր հատը չունի.
Սրա հա-ն հա է, չէ-ն էլ չէ է չոր,
Համ էլ եռք-եռանդ ունի մրջյունի:
Պատկերն է որ կա օղորմած իմ մոր»:
— Ա՜յ Մառա,— ասաց,— ա՜յ իմ
աչքի լույս,
Բա տաբատս էսպես մինչև ե՞րբ մնա:
Առ սարքի՛ր, որդի՛, հագնեմ գնամ դուրս,
Շախմատ-բան խաղամ, օրըս անց կենա:
— Ո՞նց թե, պապի՛կ ջան, մնացե՞լ է
դեռ:
Տես է՜... Է՜ս էլ քո Սառան ու Նառան...
Լավ: Հենց որ պրծանք մրցումները մեր
Էլ ուրիշ բան չէ, կպչում եմ դրան:—
Ճտպտաց Մառան համոզկեր ու տաք,
Ցույց ու ճամփու դրեց պապիկին:
Եվ ջինս տաբատը ծալեց երեք տակ,
Դարակը դրեց... Թուխս դրեց կրկին:
Եվ օրեր անցան, և օրեր դարձյալ...
Եվ հիշեց Սառան ու կծեց մատը.
«Վա՜հ, էս ո՞նց եղավ, ա՜յ պապ,
մոռացա,
Ախըր չեմ կտրել դեռ քո տաբատը:
Այ կտրվի՜ հա էս կանանց ցեղը...»
Եվ կտրեց, կարեց ու դրեց տեղը:
Անցավ մի շաբաթ: Եվ հանկարծ Նառան
Հիշեց պապիկին տված իր խոսքը:
Զարկեց ծնկին ու ելավ անվարան,
Բերեց ու կտրեց տաբատի փողքը:
Բայց հիմա արդեն չէր հիշում հաստատ.
Երե՞ք մատ էր պետք կտրել, թե՞
հինգ մատ:
Ինչ որ է... շատը քչից լավ է միշտ:
Կարեց, դրեց տեղն ու նստեց հանգիստ:
Հիշեց և Մառան գործն իր ստանձնած,
Հիշեց ու ճչաց, ոնց որ օձ խայթեր.
«Վա՜յ, ամո՜թ քեզ, վա՜յ,— ինքն իրեն
ասաց,—
Կյա՜նքդ ախըր կտաս դու պապիդ խաթեր,
Դու՛, դո՛ւ՝ պապիկիդ թոռնիկն իսկական...
Եղա՞ծն ինչ էր որ՝ ձգձգվեր էսքան...»
Եվ բերեց՝ խըրթ-խըրթ, կտրեց տաբատը:
Հիշում էր հաստատ. չափը հինգ մատ է:
Բայց իր մատները էլ բարակ են անչափ:
Ուստի հինգ մատին գումարեց մի ափ
Եվ այդպես կտրեց ամեն մի փողքը:
Եվ կարեց տաբատն ու դրեց կողքը:
Տաբատը պապի պատրաստ է, անխոս:
Մնում է հագնի ու դուրս գա փողոց:
Տեսավ պապիկը՝ տաբատն՝ աթոռին,
Տեսավ ու վերցրեց հուզմունքով խորին.
Թոռները հիշո՜ւմ են պապիկին մեկ-մեկ..
— Սառա՜ ջան, Նառա՜, Մառա՜ ջան,
ապրե՜ք...—
Եվ խնդությունից իսպառ կարկամած՝
Հագավ ու կանգնեց հայելու դիմաց:
Կանգնեց, նայեց ու... բռնեց գլուխը...
— Այ կտրվե՜ր հա ձեր ծուր ու ծուխը.
Ի՞նչ օյին բերիք դուք իմ գլխին ծեր.
Տաբատ ունեի՝ վարտի՞ք է դարձել...

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՐՍԱՏԵՂԻՆԵՐԸ



Հին Հայաստանը հարուստ է եղել բազմատեսակ կենդանիներով ու թռչուններով և համարվել է աստվածային որսատեղի: Սակայն որսորդությունը հիմնականում արքաների ու իշխանների մենաշնորհն էր: Հայկական լեռնաշխարհի ընտիր որսատեղիները մշտապես եղել են իշխողների սեփականությունը: Որսատեղիները ոչ միայն զվարճավայրեր էին, այլև զինավարժարաններ: Եվ պատահական չէ, որ հին Հայաստանի բոլոր մայրաքաղաքների, հայկական բանակատեղիների և արքունական ոստանների մոտ եղել են որսատեղիներ:

Իրենց զվարճանքին պաշտոնական բնույթ տալու համար արքաները ստեղծել են առանձին նախարարություն, որի պարտականությունն էր պաշտպանել որսատեղիները և արքաների որսի համար պատրաստել հարկավոր ամեն բան: Պատմահայր Մովսես Խորենացին գրում է, որ Հայոց Վաղարշակ թագավորը Գառնիկի զավակներից Դատին նշանակում է արքունական որսերի վերակացու: Այս Դատի որդին, որի անունը Վարաժ էր և որը, պատմիչի հավաստմամբ, եղջերուների, այծյամների ու վարազների որսերում հաջողակ էր ու քաջ նետաձիգ, Արտաշես արքայի ժամանակ նշանակվում է հոր պաշտոնին: Արքան նրան պարգևում է մի քանի գյուղեր, որոնք գտնվում էին Հրազդան գետի ափերին: Հենց այս Վարաժից էլ հետագա-

յում առաջանում է Վարաժնունյաց տոհմը, որի անունով էլ կոչվում է Վարաժնունիք գավառը: Սա վկայում է, որ արքունական որսերի վերակացուն դառնում է ժառանգական պաշտոն: Որսորդության հետ կապված հին հայկական նախարարական տներից էին Սպանդունիները ու Հավունիները: Առաջին-



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ները այդպես են կոչվել սպանդանոցների վերակացու լինելու պատճառով, իսկ Հավունիները բազեակիրներ և բազե բռնողներ էին, որոնք պարտավոր էին արքաների համար որսկան բազեներ վարժեցնել: Գրաբարում հավ նշանակել է թռչուն, դրա համար էլ թռչուններով զբաղվողներին անվանել են Հավունիներ: Վերջիններս վարժեցնում էին նաև որսկան շներ՝ քերձեներ, որ մեր նախնիները անվանում էին բարակներ: Արքունական որսերի վերակացուներ էին նաև Սլկունիները, որոնց նախարարական տիրույթը Տարոնում էր: Սրանք պարտավոր էին արքաների համար քոշեր՝ արու այծեր որսալ:

Ինչպես հին աշխարհի ուրիշ կողմերում, Հայաստանում նույնպես որսատեղիները եղել են որոգայթավայրեր: Այսպես, Մովսես Խորենացին գրում է, որ նույն Սլկունիները ապստամբում են հայոց թագավորի դեմ: Եվ ահա Մամիկոնյան տոհմի նախնի Մամգունը իր աղխով գնում է Տարոնի կողմերը, արժանանում Սլկունիների վստահությանը, որսի ժամանակ սպանում ապստամբին և որպես վարձատրություն՝ տեր դառնում Սլկունիների ժառանգական կալվածքին.:

Հայտնի է, որ Շահապիվանը եղել է հայ Արշակունի թագավորների բուն բանակատեղին, որի մոտ կային ձիարշավարան և որսատեղի: Հենց այստեղ, Լսին կոչվող լեռան մոտ, Արշակ Բ թագավորը որսի ժամանակ դավադրաբար սպանել է տալիս Գնել արքայազնին և տիրանում նրա գեղեցկուհի կնոջը՝ Փառանձեմին:

Սրբազան որսատեղիներ են համարվել Մասիսի լանջերը, որտեղ կարող էին որս անել միայն արքաները ու արքայազունները: Քերթողահայրն ասում է, որ Արտաշես Առաջին արքայի մահվան ժամանակ, հեթանոսական սովորությամբ, շատ ինքնասպանություններ են լինում: Սրա վրա, ասում են Գողթան գուսանները, Արտաշեսի որդի Արտավազդը նեղանում է և հորն ասում.

«Երբ դու գնացիր
Ու բոլոր երկիրը քեզ հետ տարար,
Ես այս ավերակների վրա
Ինչպե՞ս թագավորեմ»:

Իսկ Արտաշեսը նրան անիծելով, ասում է.

«Թե դու հեծնես որսի գնաս
Ազատն ի վեր, դեպի Մասիս,
Քաջքերը քեզ բռնեն տանեն
Ազատն ի վեր, դեպի Մասիս:
Այնտեղ մնաս, լույս չտեսնես»:

Արտաշեսից հետո թագավոր դարձած Արտավազդը երկար չի ապրում: Հոր անեծքը իրբ կատարվում է: Մի անգամ Մասիսի լանջին, Գինա գետակի ակունքների մոտ, կինճեր և վայրի էշեր որսալիս, նա ցնորվում է, ձիուց վայր ընկնում և խորասուզվում ու անհետանում ամեհի վիհի մեջ:

Սրբազան որսատեղի է եղել նաև Մասիս լեռան ստորոտներում գտնվող Փառական Շեմակաց կոչվող դաշտը, որի մասին հիշատա-

կում է Ագաթանգեղոսը: Ստույգապես հայտնի չէ այս վայրի տեղադրությունը: Որոշ ուսումնասիրողների կարծիքով այն կապ ունի Փառախոտ ավանի հետ, որ կառուցել է Ամասիայի որդի Փառոխը Մասիս լեռան մոտ:

Հայ Արշակունիների սիրած որսատեղիներից էր Կոգովիտ գավառը, որ գտնվում է Մասիսի թիկունքում: Այս գավառի Դարոնից կոչվող բերդի մոտ, բարձրաբերձ ժայռի վրա պահպանվել է մի հնագույն խորաքանդակ, որ պատկերում է սաղավարտաձև խույրերով երկու քուրմ, նրանց միջև՝ նվիրական մի եղջերու: Կոգովիտի Գայլատու ծովակը և մյուս լճերը, եղեգնուտներն ու ճահճուտները մի ժամանակ հարուստ են եղել կռունկներով, կարապներով, արագիլներով ու բադերով: Այս գավառի գովական որսատեղիներից էր Եղջյուրներ անունով լեռը: Այդպես է կոչվել եղջերվաձև ցցված ժայռերի պատճառով: Ավանդությունն ասում է, որ դրանք եղջերուներ են եղել, որոնք որսորդներից հալածվելով ՝ վախից քարացել են տեղում:

Հին Հայաստանի ամենամեծ ու անզուգական որսատեղին, իհարկե, Արարատյան դաշտն էր, որի պերճ ու հանգամանալից նկարագիրը տվել է 5—6-րդ դարերի պատմիչ Ղազար Փարպեցին. «Երկիրը, ճոխություն և ի զվարճություն որսատենչ ազատների, իր մեջ անապական ջրերով սնում է բազմատեսակ թռչուններ՝ կաղկաղող և քաղցրաձայն, առապարասեր, վիմասույզ կաքավների ու սալամբների երամներ, և կամ եղեգնաբնակ, թփերում ու մացառներում թաքկացող պարարտամարմին, անուշահամ վայրի տեսակն աքարների, այլև ջրասուզակ, մամռասեր, խոզակեր, մեծամարմին թռչուններ փորը, թանձրն ու սագը, և այլազան, անթիվ-անհամար ցամաքային ու ջրային թռչունների բազմություններ: Իսկ նախարարների գունդը, ազատների որդիների հետ, թակարդների շրջափակությամբ, երագազինք ունկաններով, հատուկ կողովներով, որսի էին ելնում: Ոմանք ցիռերի ու այծյամների ետևից արշավելով՝ իրենց աղեղների մասին էին հորդորալից բարբառում: Ուրիշները, եղջերուների ու եղնիկների հուռերի ետևից ձիարձակ սլանալով, կորովաձիգ տղամարդկանց արիություն էին ցույց տալիս: Մնացածներն էլ սուսերով, մենամարտիկների պես, վարազների երամակներ էին գետին տապալում, կոտորում: Եվ նախարարազուն շատ մանուկներ էլ, դաստիարակների ու ծառաների հետ, բազեներով տարատեսակ թռչուններ որսած, դարձյալ բերում էին, ճոխացնում ուրախության ընթրիքները: Եվ այսպես, յուրաքանչյուրը որսով լիացած, գնում էր երջանիկ: Ջրասուզակ ձկնորսների մանուկներն էլ, ըստ իրենց հանապազօրյա սովորության, քայլելով նախարարազունդ խմբի առջևից, բերում իշխաններին ընծա էին մատուցում որսած ձկներից, գետի կղզյակներից բռնած վայրի թռչունների ձագեր կամ



հավաքած ձվեր էին տալիս: Իսկ նախարարները, ընծաները ընդունելով հոժարությամբ, իրենք էլ նրանց էին առավել շատ պարգևում իրենց ունեցածներից: Եվ ամենայն բարիքներով լի՝ հասնելով իրենց ապարանքները, տանը մնացած աշխատավորներին, առավել ևս օտարներին, պարգևում էին կենդանի բե-

րած, անբիծ որսերը: Տեսնելու բան էր այս բոլորի ընթրիքների սեղանները. իրար վրա շեղջակույտ արած բազում երեները, նրանց առջև դարսված գլուխները: Դրանցով ուրախացած խնդում էին ձկնակեր ու մսակեր մարդիկ, բայց անուշ խորտիկներից առավել ուրախանում էին հոգնոր կերակուրներով»:



Սրանք հայ պատմագրության թանկագին տողերից են, որոնք հավաստում են, թե 1500 տարի առաջ Արարատյան դաշտը կենդանական ինչպիսի աշխարհ է ունեցել, թե այդ ժամանակներում ինչպես և որսորդական ինչպիսի գործիքներով էին որս անում:

Հայաստանի նշանավոր որսատեղիներից էր Ծննդոց անտառը, Ախուրյան գետի ափին, Բագարան քաղաքի մոտ, որ կառուցել է տվել Երվանդ Դ վերջին հայ թագավորը մեր թվականությունից առաջ երրորդ դարի վերջին: Այս անտառը, որ հեթանոսական գուշակարան ու որսատեղի էր, լիքն է եղել այծյամներով, եղնիկներով, ցիռերով ու վարազներով:

Փառաբանված է եղել Խոսրովի անտառը, որ այժմ դարձել է Սովետական Հայաստանի բուսական ու կենդանական եզակի թանգարան: Այն տնկել է տվել Խոսրով Բ Կոտակ հայ թագավորը մոտ 330 թվականին: Այս անտառի մի մասը գտնվում էր Արարատյան դաշտում, Արաքս գետի ափերին և Արտաշատ ու Դվին քաղաքների շրջակայքում: Անտառն սկսվում էր Դվին քաղաքին մերձ Տիկնունի պալատի մոտից և Ազատ (Գառնի) գետի ափերով բարձրանալով հասնում մինչև Գառնի ամրոցը: Ժամանակին պարսպապատված այս անտառը լցված է եղել որսի բազմատեսակ կենդանիներով: Խոսրովի անտառի տնկումը արքան հանձնարարել էր Վաչե զորավարին: Սա նշանակում է, որ հին Հայաստանում որսատեղի պատրաստելը ռազմական նշանակություն է ունեցել: Որսն էլ, ի վերջո, յուրովի զինավարժություն է:

Անանիա Շիրակացու խրախճանականներից մեկում խոսվում է այն մասին, որ Արաքս գետում բռնված ձուկը կշռում էր 240 լիտր (այժմյան չափերով մոտ ութսուն կիլոգրամ): Սա վկայում է, որ հնում Արաքս գետում բավական մեծ ձկներ են եղել: Նույն Անանիա Շիրակացին գրում է, որ Արաքսի վտակ Ախուրյան գետում ձուկ էին որսում այնպիսի ուռկաններով, որոնցից յուրաքանչյուրի թարփի մեջ ընկնում էր 45—50 ձուկ: Սա ապացույց է, որ վաղնջագույն ժամանակներից Հայաստանում զարգացած է եղել ձկնորսությունը: Թարփը լայն բերանով ու շատ նեղ բաց տակով կողով է՝ ձուկ բռնելու համար և Շիրակացու ժամանակներից մինչև հիմա համարյա մնացել է նույնը:

Վանա լճի ափին էր գտնվում Առեստ ավանի արքունի ձկնորսարանը: Սա Արշակունիների սեփականությունն էր, որոնք որոշ տուրք էին ստանում այստեղ որևէ մեկին որսի իրավունք տալու համար: Առեստ ձկնորսարանի մասին հիշատակում է Փավըստոս Բուզանդը: Որսը կատարվում էր Առեստ ավանի մոտով հոսող Առեստ (հետագայում կոչվել է Բերկրի) գետում: Այստեղից մեծ քանակությամբ տառեխ էին բռնում, չորացնում ու վաճառքի հանում: Փավստոս Բուզանդը գովասանքով է խոսում նաև Մեծ

Տոփքի Մամբրե կոչվող վայրում գտնվող Մամուշեղ ձկնառատ գետի մասին:

Հայաստանի հնադարյան որսատեղիներից է Արտենի լեռը, որ գտնվում է Արագածի հարավարևմտյան ստորոտին: Այս լեռան վրա, գլխավորապես Սատանի դար, Արեգունի և Հարավայրին բլուրներում, հայտնաբերվել են ՍՍՀՄ-ում ամենահին քարեդարյան կայանների մնացորդներ: Այստեղի գտածոները հաստատում են, որ սա աշխարհի հնագույն որսատեղիներից է: Այս լեռն իր շրջակայքով 7-րդ դարում Շիրակի և Արշարունիքի տեր Ներսես Կամսարականի տիրույթ-որսատեղին էր: Անանիա Շիրակացին գրում է, որ այս լեռան բոլորքը լիքն էր ցիռերով՝ վայրի էշերով: Մի որսի ժամանակ Ներսես Կամսարականին հանդիպում է 2160 ցիռ, որից որսորդները միայն նիզակով սպանում են 360-ը:

Հռաշալի որսատեղիներ են ունեցել Վասպուրականի Արծրունի թագավորները: Թովմա Արծրունին գրում է, որ Գագիկ Արծրունի արքան Ծվաշռոտ գավառի Գետն կոչվող ավանում կառուցել է մի վայելուչ խրախճանատեղի-որսարան, որի շրջակայքը լիքն էր վայրի խոզերի հոտերով և ցիռերի երամակներով:

Մեր պատմիչները շքեղ որսատեղիներ են համարել Տուրուբերան նահանգի Ապահունիք գավառի Սիփան լեռան լանջերը, այս կողմերում գտնվող Աղիորսք քաղաքի մոտերքը, Տայքի Պարխար լեռները, Ուտիքի Խաղխաղ քաղաքի մոտի արքունական ձմեռանոցը, Սյունիքի Նակորզան ավանը, որ գտնվում էր Արաքս գետի ափին, այժմյան Խուդափերինի կամրջի մոտ: Իսկ Կարնո աշխարհի մասին Մովսես Խորենացին ոգևորված գրել է. «Այստեղ անհաշիվ քանակությամբ ձկներ են լինում և զանազան տեսակ թռչուններ, որոնք սնվում էին այնտեղ, որոնց ձվերով միայն կերակրվում էին բնակիչները: Լեռները լիքն են կճղակաբաշխ և որոճող երեներով»:

Հետագա դարերում հայկական որսատեղիները ոտնատակ եղան օտար նվաճողների կողմից: Ասպատակողները հոշոտեցին Հայոց պերճ բնությունը, և կենդանիների շատ տեսակներ իսպառ վերացան:

Սովետական Հայաստանում այժմ արգելանոցների են վերածվել բոլոր որսատեղիները: Հանրապետությունում արգելված է հազվագյուտ կենդանիների ու թռչունների որսը: Իսկ ընդհանրապես որսն այնպես է կազմակերպվում, որ նրանից չտուժի հայրենի բնությունը:



## ԳԵՐԲԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Գերբը կամ էմբլեման՝ պայմանական կամ սիմվոլիկ պատկեր է: Պետությունների, քաղաքների զինանշանն է, տարբերանշանը: Այդպիսի նշաններ ունեցել են նաև իշխանական տները, առանձին անհատներ, որ ժառանգաբար կրել են սերնդից սերունդ: Եվ հենց գերբ բառն էլ, որը գերմանական ծագում ունի, նշանակում է ժառանգություն:

Պատմությանը հայտնի ամենահին պետությունը Շումերա-ակկադականն է, որն ստեղծվել է մ. թ. ա. 3-րդ հազարամյակում: Եվ հենց շումերներն էլ ստեղծել են առաջին պետական գերբը: Դրա վրա պատկերված էր առյուծի գլխով արծիվ: Առյուծի գլխով գիշատիչ թռչունի պատկերը ցույց էր տալիս երկրի ուժը և, ինչպես վայել էր հին աշխարհի պետությունների, նրա ռազմատենչ բնույթը:

Հայկական գերբի մասին հիշատակությունները վերաբերում են մ. թ. ա. 3-րդ և 2-րդ դարերին:

1828 թ., երբ Արևելյան Հայաստանը անցավ ռուսաց տիրապետության տակ, ստեղծվեց Հայկական մարզ, որի մեջ մտան Երևանի և Նախիջևանի խանությունները: Որպես կայսրության մի նահանգ, Հայաստանը պետք է ունենար իր խորհրդանշանը՝ գերբը: Հայկական մարզի վարչապետ իշխան Բեհբութովը, որ քաջատեղյակ էր հայոց պատմությանը, առաջարկեց շատ հետաքրքիր մի տարբերակ: Գերբի վահանի վրա 6 զինանշան կար, որոնցից յուրաքանչյուրը տարբեր ժամանակներում հայոց թագավորները կրել էին իրենց դրոշների, դրամների, քաղաքի դարպասների և պարիսպների վրա:

Գերբին պատկերված էին Տիգրան Մեծի, Արշակունիների, Կիլիկիայի Ռուբինյանների զինանշանները, ինչպես նաև Արարատը՝ Նոյյան տապանով: Առաջին հայ թագավորները իրենց դրոշներին միշտ ունեցել են սրբազան լեռան պատկերը: Այնպես որ իշխան Բեհբութովի ներկայացրած գերբի տարբերակը կրում էր այս բոլոր տարբերանշանները և մտացածին չէր:

Բայց ցարական կառավարությունը չընդունեց այն և 1882 թ. հաստատվեց Ռու-



















1. Արտաշեսյան հարստության ժամանակաշրջանի հայկական գերբը
2, 3, 4 Կիլիկյան հայկական թագավորության գերբեր
5. Հայկական մարզի կառավարիչ իշխան Բեհբութովի առաջարկած հայկական մարզի գերբի տարբերակից հատվածներ
6. Հայկական մարզի գերբը (հեղ. Ալ. Օլենին)

սաստանի գիտությունների և գեղարվեստի ակադեմիայի պրեզիդենտ Ալ. Օլենինի նախագիծը:

Վրադիր վահանին Արարատն է, գագաթին՝ Նոյան տապանը: Կատարն ու ամպերը արծաթից են, տապանը՝ ոսկուց:

Ներդիր վահանը բաժանված է երկու մասի: Ներքևի աջ մասում հայ հնագույն կայսրության թագն է՝ ամբողջովին ոսկուց, ցողված մարգարիտով, ի նշան այն բանի, որ երբևէ գոյություն է ունեցել Մեծ Հայաստան և այդ թագը կրել է նրա հզոր տիրակալ Տիգրան Մեծը:

Աստղը արծաթից է, գլխակապը՝ երկնագույն: Ձախ կողմում, կանաչ ֆոնի վրա, պատկերված է Էջմիածնի Մայր տաճարը՝ ամբողջովին արծաթից, գմբեթներն ու խաչը՝ ոսկուց: Արարատն ու մայր տաճարը խորհրդանշում են, որ Հայաստանը առաջինն է պետականորեն ընդունել քրիստոնեությունը: Վահանի վերին մասում, ոսկե ֆոնի վրա ռուսական երկգլխանի արծվի ծավալուն պատկերն է՝ ճանկերում ընդհանուր վահանը: Ամբողջ գերբին բազմել է մեծապետական թագը, ի նշան այն բանի, որ հայկական նահանգը անցել է Ռուսաստանի հովանու ներքո:

Հետագայում ստեղծվեցին նաև Ալեքսանդրապոլի, Կարսի առանձին գերբերը:

# ԱՆՍՈՎՈՐ ՕԼԻՄՊԻԱԴԱ

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Մենք՝ մարդիկս երկրագնդի միակ բընակիչները չենք, մեզանից բացի կան բազմապիսի ու բազմաքանակ այլ կենդանի արարածներ, որոնք նույնպես գիտեն վազել, ցատկել, լողալ և այլն: Հետևաբար, մի պահ պատկերացնենք, թե ինչպիսին կլիներ համընդհանուր օլիմպիադան նաև նրանց անմիջական մասնակցությամբ:

Հայտնի է, որ վազքի չեմպիոն ամերիկացի Սմիթը հարյուր մետր տարածությունը հաղթահարում է տասը վայրկյանից քիչ ժամանակամիջոցում, այսինքն զարգացնում է 36 կմ/ժամ արագություն, այնինչ հովազը նրանից քառապատիկ արագ է վազում, հեշտությամբ որսալով 90 կմ/ժամ վազող գնու այծեղջյուրին և 80 կմ/ժամ արագություն ունեցող ջայլամին: Հեռացատկի բացարձակ չեմպիոն է աֆրիկական սևաբիծ այծեղջյուրը, որը ցատկում է 12 մետր, ուրեմն 3,1 մ ավելի, քան մարզիկ Ռոբերտ Բիմոնը, իսկ սովորական լուն ցատկելով հաղթահարում է սեփական մարմնի վաթսունապատիկ տարածությունը: Նման արդյունքի հասնելու համար 2 մետրանոց մարդը պետք է ցատկի 120 մետրից ավելի: Չինացի Ջժուն ցատկեց 2 մետր 37 սմ բարձրության վրա գտնվող ձողափայտի վրայով, բայց 90 կգ քաշ ունեցող կենգուրուն 2,5 մետր բարձրությունը հաղթահարում է ուղղակի նստած դիրքից, և վտանգի

դեպքում էլ հեշտությամբ թռչում է 8 մետրից բարձր: Եվ եթե ցամաքում ինչ-որ չափով մարդը դեռևս հակադրվում է կենդանիներին, ապա ջրում բոլորովին խղճուկ է, չէ՞ որ նրա լողի ժամանակ զարգացրած ռեկորդային 7—8 կմ/ժամ արագությունը չի կարող համեմատվել 180 կմ/ժամ լողացող սրաձկան կամ նույնիսկ ժամում 60 կմ հաղթահարող իր «կրտսեր եղբայր» դելֆինի հետ: Ինչ մնում է պանծալի ծանրորդներին, ապա նրանք անզոր են ծանրաքարշ փղերի հանդեպ, սրանք էլ իրենց հերթին, համեմատական կարգով թույլ են մրջյուններից, որոնք հեշտությամբ հաղթահարում են սեփական քաշի բազմապատիկը: Եվ ինչքան էլ տհաճ լինի մարդկանց ինքնասիրության համար, կենդանիներն այդ արդյունքներին հասել են ոչ թե մարզվելով բարձրորակ մարզիչների և հատուկ ծրագրերի օգնությամբ, այլ կատարելագործվել են հազարամյակներ տևած գոյության պայքարում, գոյատևել են առավել ուժեղները և հարմարվածները: Բայց ի պատիվ մարդկանց, ասենք, որ նրանք չեն հաշտվում իրենց պարտության մտքի հետ և ձգտում են զանազան հարմարանքների՝ լողակների, ցատկափայտի, դելտապլանի օգնությամբ հաղթող դուրս գալ երևակայական ու անսովոր օլիմպիական խաղերում:

**ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ**
Կենսաբանության թեկնածու

## ԿԱՊԻՏԱԼԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

# Ողբերգություն Սումպուլ գետի ափին

Հոնդուրասի Գուարիտա փոքրիկ գյուղի կաթոլիկ քահանա Էրլ Գալախերը սիրում էր ոտքով զբոսնել: Հաճախ նա շրջում էր Սումպուլ հորդառատ գետի ափին: Ծխականները այդ առիթով կատակում էին, որ իրենց ոչ այնքան էլ ծեր «տեր հայրը» սիրում էր նայել, թե ինչպես էին սալվադորական Լաս-Արադաս գյուղի աղջիկները գետում լվացք անում: Ինչ էլ որ լիներ, բացի պառավների կատակներից, ոչինչ չէր խանգարում Հոնդուրասի և Սալվադորի սահմանի վրա գտնվող այդ լքված անկյան լռությունն ու հանգիստը, որի միակ ժամապահը Սումպուլի վարար ջրերն էին:

Բայց մի անգամ...

Հերթական զբոսանքի ժամանակ Գալախերը նայեց դիմացի ափին և ցնցվեց. ափը լցված էր դիակներով: Ծուտով Գալախերը թփերի միջից թույլ հառաչ լսեց: Նայելով այնտեղ, նա տեսավ գետնին ընկած մի տասնամյա տղայի: Գնդակները դիպել էին նրա այտին, կոնքին և ուսին:

Երբ վիրավորին օգնություն ցույց տվեցին, նա պատմեց, թե ինչ էր տեղի ունեցել Լաս-Արադասում: Սալվադորի խունտայի զինվորները պարտիզաններին որոնելով, համատարած գնդակոծում էին գետի ափը: Հասնելով գյուղին, նրանք փորձ չարեցին պարզելու՝ այնտեղ պարտիզաններ կային թե ոչ, այլ շրջապատեցին գյուղը և ռադիոկայանով ուղղաթիռներ կանչելով, սկսեցին կոտորել բոլորին: Նրանք, ովքեր հրաշքով փրկվել էին գնդակներից և ռումբերից, նետվեցին գետը և փորձեցին լողալով հեռանալ և հասնել Հոնդուրաս: Բայց զինվորները դուրս եկան ափ և անընդմեջ կրակ բացեցին լողացողների վրա:

Հետագայում, Գալախերը հանդիպեց ուրիշ փախստականների սահմանամերձ գյուղերից: Գրի առավ նրանց կրած սարսափների մասին և ուղարկեց ամերիկյան թերթերի խմբագրություններին: Գալախերը ցանկանում էր, որ ամերիկացիները իմանային Սալվադորում խունտայի կատարած ոճրագործությունների մասին, որին օգնում է պրեզիդենտ Ռեյգանը: Սակայն համարյա բոլոր թերթերն էլ հրաժարվեցին տպագրել Գալախերի նամակները: Դրա փոխարեն Սալվադորի խունտան մահվան սպառնալիքով վախեցրեց քահանային, իսկ Հոնդուրասի կառավարությունը հայտարարեց, որ նրան դատի կտա «երկրի ներքին քաղաքականությանը կոպիտ կերպով միջամտելու համար»:



## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

# ՍՊԻՏԱԿԱՎՈՐ

Եղեգիսի կիրճի մի գեղատեսիլ հատվածում, պտղատու ծառերի ու այգիների մեջ, հայացքն արևելքին, տարածվել է Շատին գյուղը: Գետի հոսանքով դեպի վեր Եղեգիսն է և Ալայազը, իսկ արևելյան ուղղությամբ արահետները տանում են Շատին վանք: Այստեղ պահպանվել է ս. Սիոն եռանավ եկեղեցին, որի կառուցումն ավարտվել է 1665 թ.: Ներսում, թեև շատ քայքայված, բայց մնացել են

որմնանկարներ: Եկեղեցու արևմտյան կողմում նշմարվում են գավիթի ավերակները: Վանքի պարսպին կից պահպանվել են բազմաթիվ օժանդակ շինությունների մնացորդներ: Պարսպից դուրս գերեզմանատունն է ու իր կառուցման եղանակով եզակի ջրաղացի ավերակները: Գյուղն այստեղից չի երևում: Վանքը բոլոր կողմերից շրջապատված է բարձր լեռներով ու նման է ջրհորի հատակն ընկած փոքրիկ պարսպապատ տնակի:

Մենք հաղթահարում ենք դժվարին վերելքը և հայտնվում վանքն արևելյան կողմից պաշարող սրածայր լեռնագագաթին: Այստեղից հիանալի երևում է գրեթե ողջ Եղեգնաձորը: Մի քանի ժամ քայլելուց հետո կտրում անցնում ենք խճուղին և հայտնվում մի բարձր լեռան լանջի: Ուղիղ մեր գլխավերևում ծառերի ու թփուտների արանքից շողշողում է Սպիտակավորը: Նրա ճերմակ, դեղնավուն պատերը երևում են շատ ավելի հեռվից, լեռան ստորոտից, և նուրբ ու սլացիկ ուրվագծով առանձնանում են ամռան դեղնականաչավուն լանջին, որտեղ տարածված է վայրի մեխակների բուրմունքը: Սպիտակավորին մոտենում ենք հարավային կողմից. նախ մտնում ենք կիսաքանդ գավիթը և այնուհետև արևմտյան կողմից՝ եկեղեցի:

Տասնչորսերորդ դարում (1821 թ.) եկեղեցին կառուցել է վարպետ Մոմիկը: Գավիթի ներսում, պատերի տակ խնամքով դասավորված են զարդաքանդակների ու խաչքարերի նշխարներ, պատկերաքանդակների բեկորներ: Մեր օրերում եկեղեցին վերանորոգվել է և փրկվել կործանումից: Շատ տպավորիչ է եկեղեցու մուտքի տիմպանի (մուտքի վերևի կամարաձև քարի) աստվածածնի պատկերաքանդակը: Նրա նրբությունը կարելի է համեմատել միայն մանրանկարային աստվածածնի հետ: Եվ հանկարծ միջնադարյան այս հրաշալի ստեղծագործության վրա մեսրոպյան հրաշալի տառերով, անիծված մեկը արել է մակագրություն, այն էլ ոչ թե պատի կամ «մաքուր» քարի, այլ տիմպանի վրա, աստվածածնի կողքին:

Եկեղեցու պատերին պահպանվել են բազմաթիվ արձանագրություններ, որոնցից տեղեկանում ենք, թե ովքեր են եղել վանքի շինարարության հովանավորողներն ու նվիրատուները:

Մոմիկի ձեռքն այստեղ ևս ճանաչելի է. մեծ ներշնչանք, համարձակ ու անսպասելի լուծումներ: Դրա վառ ապացույցն է եկեղեցու արևելյան ճակատը զբաղեցնող կոտրտված ձևերով, յուրօրինակ խաչը: Ոմանք համարում են, որ սա ոչ թե կամայական կոտրտվածություն է, այլ միանգամայն որոշակի՝ եռակի հայելային անդրադարձում:

Սպիտակավորից մոտ յոթ կմ դեպի հարավ, գետակն ի վար, Վերնաշեն գյուղն է: Այստեղից մոտ նույնքան հեռավորության վրա հարավարևելյան ուղղությամբ՝ Մալիշկա տանող ճանապարհին, Թանահատի վանքն է: Մալիշկան Եղեգնաձորի ամենագեղեցիկ գյուղերից մեկն է: Ամայի լեռներով շրջապատված՝ նա, իրոք նման է օազիսի: Մալիշկա անունը կապ չունի ռուսերեն, «մանչուկ» (малышка) բառի հետ, «մի լիճ կա» արտահայտության հնչյունափոխված ձևն է սա: Մալիշկայի կանաչ այգիների կատարները երևում են նույնիսկ Թանահատի վանքից: Վանքը գոյություն է ունեցել դեռևս ութերորդ դարում: Այստեղ նշանավոր Ստեփանոս Սյունյաց եպիսկոպոսի գերեզմանի տեղում 1279 թ. կառուցվել է ս. Ստեփանոս եկեղեցին, որի հեղինակն է ճարտարապետ և քարագործ Ծնորհավորը: Եկեղեցու պատին քանդակված է Պռոշյան իշխանների խորհրդանշանը՝ թևերը լայն տարածած ու մագիլներով խոյին բռնած արծիվ: Եկեղեցին նորոգվում է և հիանալի տեսք ունի: Սպիտակավորից ընդամենը 12 կմ է հեռու և զարմանալիորեն անաղարտ է՝ ոչ մի մակագրություն և ոչ մի փչացրած քար: Զարմանալի է, որ նույն շրջանում, նույն հողի մարդիկ միանգամայն տարբեր վերաբերմունք են հանդես բերում մեր հոգևոր արժեքների նկատմամբ: Սպիտակավորը նման է զոհի կամ հարմար ու մոտ նշանակետի: Մինչդեռ Թանահատը անեղծ է և ներկայանում է իր նախնական տեսքով:

Ս. Ստեփանոս եկեղեցու հյուսիսային պատին կից կառուցված է ս. Նշան եկեղեցին, որը հավանաբար ժամանակակից է ս. Ստեփանոսին: Նրա մուտքի ճակատակալ քարի վրա մեծ վարպետությամբ քանդակված է որսի տեսարան: Նման բնույթի պատկերաքանդակներ շատ կան Եղեգնաձորում, որը վկայություն է այս շրջանի հարուստ կենդանական, հետևաբար նաև բուսական անցյալի:

ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ
ճարտարապետ

● Վերջին հարյուրամյակում Համաշխարհային օվկիանոսի մակարդակը բարձրացել է 10—15 սմ-ով: Երկրաբանների կարծիքով դրա պատճառը սառույցների հալումն է (հիմնականում ոչ թե սառցաբեկորների, այլ բարեխառն լայնությունների սառցադաշտերի), ինչպես նաև Համաշխարհային օվկիանոսի ծավալի մեծացումն է, որը հետևանք է ջրի ջերմային ընդարձակման և կլիմայի ընդհանուր տաքացման:

● Եվրոպայում այժմ կա 408 տեսակի թռչուն, որոնցից 221 տեսակի քանակը պակասել է, իսկ մոտ 60 տեսակ կարելի է համարել ոչնչացած:



● Հավատա՞լ ռեկորդներին:

Ոչ միշտ: Այս եզրակացությանն են հանգել սպորտի մասնագետները, ելնելով ֆիզիկայի օրենքներից:

Սպորտի շատ ձևերում, որտեղ արդյունքը ժամանակն է, հաղթողին և պարտվողին բաժանում են վայրկյանի հարյուրերորդական մասերը:

Այստեղ էլ հենց թաքնված է անվստահության պատճառը. ստարտի ազդանշանի ձայնը՝ լինի դա սուլոց թե կրակոց, վայրկյանի հարյուրերորդական մասում հասցնում է անցնել հազիվ երեք մետրից քիչ ավելի: Ստացվում է այնպես, որ մարզիկը որքան մոտ է գտնվում դատավորին, այնքան նա հաղթելու ավելի շատ հնարավորություններ ունի:



● Էվերեստը գտնվում է Չինաստանի և Նեպալի սահմանում, և երկու պետությունները էլ արգելում են աղբը թափել լեռան լանջերին: Դժբախտաբար, շատ ալպինիստներ ձգտելով նվաճել աշխարհի ամենաբարձր լեռնային գագաթը, այնտեղ թողնում են կոտրված կամ անպետք սարքավորումներ, աղբ, թափոններ: Իտալացի լեռնագնաց Ռենե Ջիլինիի կարծիքով, եթե խիստ միջոցներ չձեռնարկվեն, ապա 5200 մ բարձրության վրա գտնվող հենակետային ճամբարը մի քանի տարի հետո կվերածվի մի մեծ աղբակույտի: Ինչ ասես որ այնտեղ չես տեսնի՝ դեն շպրտված վրաններ, թըրթված սարքավորումներ, գազի դատարկ բալոններ, ամանեղեն:

Էվերեստի լանջերի կեղտոտումը դառնում է լուրջ պրոբլեմ: Դրա լուծման առաջին քայլը կատարել է Նեպալի կա-

ռավարությունը, պարտավորեցնելով բոլոր արշավախմբերին վարձել տասը լրացուցիչ բեռնակիրներ, որոնք պետք է լեռնագագաթը բարձրանալուց հետո ամբողջ աղբը ուղերթից հավաքեն:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

● Ինչպե՞ս են թռչունները գտնում ճանապարհը, պահպանելով ճիշտ ուղղությունը հազարավոր կիլոմետրերի վրա: Կան վարկածներ, որոնք բացատրում են այդ երևույթը՝ ելնելով թռչունների դեպի երկրի մագնիսական դաշտը ունեցած զգայունությունից: Կան և ուրիշ կարծիքներ, ըստ որոնց թռչունները գտնում են ճանապարհը արևի միջոցով կամ էլ Երկրի վրա կողմնորոշող առարկաների միջոցով:

Իսկ վերջերս փորձնական ճանապարհով հաստատվեց, որ թռչունները կողմնորոշվում են... հոտի միջոցով:

Ահա թե ինչ ցույց տվեցին փորձերը: Փոստային աղավնիները հեշտությամբ գտնում էին իրենց աղավնաբնի ճանապարհը նույնիսկ 700 կմ հեռավորության վրա:

Այն թռչունները, որոնց նշան էին արել հատուկ բաղադրանյութով, որը կլանում էր բոլոր տեսակի հոտերը, չէին վերադառնում նույնիսկ 50 կմ հեռավորությունից:

Տրամաբանական է ենթադրել, որ՝ թռչունների «նավարկության սարքերը» ավելի բարդ են, քան կարծում էին առաջ: Թռչունները կողմնորոշվում են և՛ արևի, և՛ մագնիսական դաշտի, և՛ հոտի միջոցով:

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




(Տևել է հունիսի 7-ից հուլիսի 6-ը)

Հայոց տոմարի 11-րդ ամիսն է: Ստ. Մալխասյանցի (1857—1947) ստուգաբանությամբ՝ մարգաց նշանակում է թռչունների թխսի ամիս: Ըստ Ք. Պատկանյանի (1833—1889), հայոց տոմարի 11-րդ ամսանունը կապված է «մարգ» բառի, այսինքն՝ խոտհարքի, խոտհունձի հետ: Նույն կարծիքն է հայտնել նաև ֆրանսիացի հայագետ Ե. Դյուլորիեն (1807—1881): Այս բացատրությունը տոմարագետների մեծ մասը ընդունում է, մանավանդ որ թե՛ Անանիա Շիրակացին և թե՛ Վանական Վարդապետը մարգացը մոտավորապես նույն կերպ են ստուգաբանում: Այսպես՝ Անանիա Շիրակացին այս ամսանունը բխեցնում է ամառային աշխատանքների բնույթից: Վանական Վարդապետը այդ առնչությամբ հետևյալն է գրում. «... Իսկ մարգացը այն ժամանակն է, երբ դաշտերի ու հովիտների, բուրաստանների ու այգեստանների մարգերը բոլորում են», այսինքն՝ խոտհարքից հետո չորացած խոտը դարձնում են խուրձ և շարում են դաշտերում:

**Ռ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ**

## ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ




Հարուստ ու բազմազան է մեր հանրապետության բուսական ծածկույթը: Տեսակների առատությամբ Հայաստանը երկրագնդի ամենահարուստ շրջաններից է համարվում: Մեր անտառներում աճում են տանձենու, սզնենու, արոսենու, թեղու, նշենու, բոխու, կոտենու, մասրենու բազմաթիվ տեսակներ, որոնք այլ երկըրներում չեն հանդիպում, զուտ հայկական են: Մեր հանրապետության տարածքում հանդիպում են նաև մեծ քանակությամբ «օտարերկրյա» ծառեր, որոնք բերվել են ուրիշ երկրներից, և հրաշալիորեն հարմարվել են մեր բնակլիմայական պայմաններին: Դժվար է հավատալ, չէ՞ որ սովորական ընկուզենին, դեղձենին, թթենին, բրգաձև բարդին, սպիտակ ակացիան ներմուծված են ուրիշ երկրներից:

Բայց արդյոք բոլո՞րս ենք ճանաչում այդ տեսակները, կարողանո՞ւմ ենք տարբերել միմյանցից: Ցավոք, մեծ մասամբ, ոչ: Մենք դժվարանում ենք իրարից տարբերել անգամ ամենատարածված բույսերը, որոնց հետ մշտապես առնչվում ենք: Վաղուց արդեն անհրաժեշտ էր ստեղծել ծառերի վերաբերյալ հատուկ տեղեկատու, որի օգնությամբ հնարավոր լիներ ճանաչել մեր հանրապետության տարածքում սփռված բուսատեսակները: Տարիներ առաջ այս մտահոգությամբ «Պիոների» խմբագրությունը դիմեց կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր Լևոն Հարությունյանին: Ու ծնվեց «Քո շրջապատի ծառերը» հանրամատչելի ակնարկների շարքը, որոնք գեղեցիկ ձևավորումներով պարբերաբար տպագրվեցին ամսագրում:

Այդ շարքը ընդարձակվել, հարստացել, գիրք է դարձել և նույն «Քո շրջապատի ծառերը» խորագրով գտնվում է պատանի ընթերցողի սեղանին: Սա հայերեն առաջին փորձն է իբրև այդպիսին և ընդգըրկում է Հայաստանում տարածված շուրջ 220 ծառատեսակ:

«Քո շրջապատի ծառերը» գրքում տըրված է ամեն ծառատեսակի հայերեն, ռուսերեն, լատիներեն անվանումը, արտաքին տեսքի նկարագիրը, ժողովրդատընտեսական նշանակությունը, միջավայրի նկատմամբ ունեցած պահանջները, ինչպես նաև գունավոր նկարը:

---

*ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ*
*Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։*
*Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։*

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.






Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Լ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Ծ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնված է տպագրության 14.08.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 6.11. 1984 թ.։ ՎՖ 12631։ Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 63652։ Պատ. 1775։ Գինը՝ 15 կ.։*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 14.08.84 г. Подписано к печати 6.11.84 г. Формат $70 \times 100^7/_{16}$. ВФ 12631. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 63652. Заказ 1775. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

